ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԳԻՏԱ-ՀԵՏԱԶՈՏԱԿԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ — «ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»

ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ

ԵՐԵՎԱՆ № 5 1960

Եվստաթիոս Բոյիլասի կտակը (1059 թ.) որպես Հայաստանի և Վրաստանի պատմության կարևոր սկզբնաղբյուր [The Will of Eustathius Boilas (1059) as an Important Primary Source for the History of Armenia and Georgia], volume 5 (1960), pp. 393-430, in 38 pdf pages.

Հ. ԲԱՐԹԻԿՅԱՆ

# ԵՎՍՏԱԹԻՈՍ ԲՈՅԻԼԱՍԻ ԿՏԱԿԸ (1059 Թ.) ՈՐՊԵՍ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ՎՐԱՍՏԱՆԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՍԿԶԲՆԱՂԲՅՈՒՐ

*Միջնադարյան Հայաստանի սոցիալ-տնտեսական հարաբերությունների ուսումնասիրության հարցը միշտ էլ գտնվել է սովետահայ պատմաբանների ուշադրության կենտրոնում: Մինչև այժմ գրվել են բազմաթիվ հոդվածներ ու մենագրություններ այս հարցի վերաբերյալ: Սակայն այդ աշխատություններում գրեթե չի օգտագործված բյուզանդական աղբյուրների նյութը: Հայկական սկզբնաղբյուրների տվյալները նշված հարցի մասին, որոնք գլխավորապես վերաբերում են արևելյան Հայաստանի սոցիալ-տնտեսական հարաբերություններին, չի կարելի մեխանիկորեն տարածել արևմտյան Հայաստանի վրա: Արևմտյան Հայաստանը դարերի ընթացքում գտնվել է բյուզանդական տիրապետության տակ: Բնականաբար Բյուզանդիայում տիրող սոցիալ-տնտեսական հարաբերությունները այս կամ այն չափով արմատացել էին նաև նրա կողմից նվաճված տերիտորիաներում՝ ընդհանրապես և արևմտյան Հայաստանում՝ մասնավորապես: Այդ պրոցեսն սկսվել էր դեռևս Հուստինիանոս կայսեր ժամանակաշրջանից, վեցերորդ դարի առաջին կեսից: Նշված կայսեր մեկ օրենքի վերնագիրը միայն,— «Հայերի մասին, որպեսզի նրանք ևս ամեն ինչում հետևեն հռոմայեցիների օրենքներին»[1],— բավական է համոզվելու համար այդ բանում: Հետաքրքրականն այն է, որ հետագա ժամանակներում էլ այդ օրենքը ուժի մեջ էր: Մակեդոնական հարստության «Բասիլիկի» կոչվող օրենսդրական ժողովածուում, որը գործածության մեջ է եղել բազում դարեր, այդ նույն օրենքը ուժի մեջ էր[2]: Այդ պրոցեսը շարունակվեց նաև հետագայում. 10—11-րդ դարերում, երբ բյուզանդական տիրապետությունը տարածվեց նաև արևելյան Հայաստանի վրա, զավթիչների հետ միասին այնտեղ մուտք գործեց նաև բյուզանդական օրենսդրությունը և կարգ ու կանոնը: Հասկանալի է, ուրեմն, որ 10—11-րդ դարերի Հայաստանի սոցիալ-տնտեսական հարաբերությունների ուսումնասիրությունը առանց բյուզանդական սկզբնաղբյուրների ընձեռած նյութի հնարավոր չէ:*

*Այդ տեսակետից բացառիկ արժեք է ներկայացնում բյուզանդական ֆեոդալ Եվստաթիոս Բոյիլասի կտակը, գրված 1059 թվականին:*

*Կտակը գտնվում է Փարիզի Ազգային Մատենադարանի Կոալենյան շարքի 263 համարի տակ գտնվող մագաղաթյա ձեռագիր մատյանում: Այդ մատյանի*

---

[1] Corpus Juris Civilis, vol. III, Novellae, recognovit R. Schoell, Berolini, 1895, Novell. XXI, caput. I, p. 145.

[2] Basilicorum libri LX, ed. C. G. E. Heimbach, liber XLV, tit. VI, § a, Lipsiae, 1846.

մասին առաջին անգամ հիշատակում է Բերնար Մոնֆոկոնը, ցույց տալով, որ այն բովանդակում է Հովհաննես Կլիմաքսի «Սանդուխք առաուածային ելից»-ը. ելնելով հնագրական տվյալներից, նա ենթադրում էր, որ գրված պետք է լինի 11-րդ դարում[1]։

Հ. Օմոնը 1888 թվականին հայտնաբերեց ձեռագիր այդ մատյանի ընդօրինակության որոշակի թվականը — 1059 թ., որը նշված է ձեռագրի գրչի հիշատակարանում։ Հ. Օմոնը միաժամանակ ցույց տվեց, որ նույն մատյանի վերջում գտնվում է ամն պրոտոսպաթար Եվստաթիոս Բոյիլասի կտակը, նույնպես գրված 1059 թվականին[2]։ «Սանդուխք»-ի, և կտակի ընդօրինակությունը կատարված է նույն գրչի կողմից, այդ ապացուցվում է ոչ միայն գրության նմանությամբ, այլև գրչի թողած հետևյալ հիշատակարանով.

«Ավարտվեց ամենասուրբնի «Սանդուխքը»,— ասված է հիշատակարանում,— հրամանով պրոտոսպաթար և հյուպատոս Եվստաթիոս Բոյիլասի, ձեռամբ իմ՝ Թեոդուլոսի, Սալիմի ամենասուրբ Աստվածածնի վանականի և երեցի (երկուսս էլ կապպադովկացի), Իսահակ Կոմնենոսի[3] թագավորության ժամանակ, երբ թագավորանիստ [քաղաքի] պատրիարքն էր պրոէդրոս ու պրոտովեստիարիոս Կոնստանդինը[4], Անտիոքի՝ Թեոդոսիոսը, վեց հազար հինգ հարյուր վաթսունյոթ թվականին[5], տասներկուերորդ ինդիկտիոնում, ապրիլ ամսի չորսին, ժամը յոթին, ավագ շաբաթ օրը, երբ Եդեսիայի կատապանն էր Հովհաննես Դուկիծեսը[6], Անտիոքի դուքս՝ Ադրիանոսը, արքայական Միջագետքի պրոէդրոսն ու ինքնակալ տերը՝ Ահարոն Պարադունավիսը[7], Իբերիա-

[1] Bernardus de Montfaucon, Bibliotheca Coisliniana olim Segueriana, Parisiis, 1715, p. 306. Հմմտ. R. Devreesse, Catalogue des manuscrits grecs. II, Les Fonds Coislin, Paris,1945, p. 241—242.

[2] H. Omont, Inventaire sommaire des manuscrits grecs de la Bibliothèque Nationale, Troisième partie, Inventaire sommaire des manuscrits grecs de Coislin, Paris, 1888, № 263 (p. 164).

[3] Իսահակ Կոմնենոս, գահակալել է 1057—1059 թթ.։

[4] Կոնստանդին Գ. Լիխուդես, աթոռակալել է 1059—1063 թթ.։

[5] Աշխարհի «արարչագործության» թվականն է, որ համապատասխանում է մեր թվականության 1059 թ.։

[6] Եդեսիայի կատապան Դուկիծեսի մասին հայ հեղինակներից հիշատակում է Մատթեոս Ուռհայեցին. «Եւ յայնժամ առաքեաց (Կոմնենոս կայսրը—Հ. Բ.) ի կողմն Տաճկաց ի քաղաքն յՈւռհա և բերեալ զառւն քաղաքին Ուռհայոյ, որում անուն էր Տուկիծ, վասն զի ի մեծամեծաց ազգէ էր, եւ առեալ զթագն դնէր ի գլուխ Տուկծին» (Մատթեոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898, էջ 127)։

[7] Արքայական Միջագետքի պրոէդրոսն ու ինքնակալ տերը Ահարոն Պարադունավիսը ոչ այլ ոք է քան հայտնի Ահարոն բուլղարը։ Սա 1049 թ. նշանակվեց Անիի կառավարիչ, հաջորդելով Կատակալոն Կեկավմենոսին։ Ահարոնը Անիի մայր տաճարի արևմտյան պատի վրա 1055—1056 թվականներին թողել է հայերեն արձանագրություն, որ խոսվում է քաղաքի պարիսպների բարձրացման, աշտարակների կառուցման, ջրմուղի անցկացման մասին և այլն (տե՛ս В. Н. Бенешевич, Три Анийские надписи XI века из эпохи византийского владычества, Петербург, 1921, стр. 2).

Ինչպես տեսնում ենք վանական Թեոդուլոսի թողած հիշատակարանից, 1059 թ. Ահարոնը Միջագետքի դուքսն էր։ Սա ցույց է տալիս, որ Գրիգոր Մագիստրոսի մահվանից (1058 թ.) անմիջապես հետո, հակառակ Կոնստանդին 9-րդ Մոնոմախի խոստումի, որի համաձայն Միջագետքի դքսությունը տրվում էր Գրիգոր Պահլավունուն և նրա սերունդներին (հմմտ. Արիստակես Լաստիվերտցի, Պատմություն, էջ 61 «Եւ մեծարեալ (Գրիգոր) ի նմանէ՝ (ի Մոնոմախէ) առնու զպատիւ մագիստրոսութեան, և զանգիս բնակութեան ի սահմանս Միջագետաց զեօղս եւ քա-

յի՝ Վասիլիոս մագիստրոսը և Հովհաննես Մոնաստիրիոտեսը[1], Վասպուրականի՝ Բագարատը[2], Հովհաննես կուրապաղատի և սխոլերի դոմեստիկի Կոմնինոս Թագավորի եղբոր (ժամանակ)»։

Բոյիլասի կտակի վերջում ևս կա հիշատակագրություն այն մասին, որ այն գրված է 1059 թվականին, նույն վանական Թեոդուլոսի ձեռքով։

Ֆրանսիայի հնագետների ազգային ընկերության (Société Nationale des Antiquaires de France) 1890 թվականի փետրվարի 5-ի նիստում Հ. Օմոնը բյուզանդագետների ուշադրությունը հրավիրեց Եվստաթիոս Բոյիլասի կտակի վրա, ընդգծելով նրա նշանակությունը Բյուզանդիայի պատմության և հնագիտության ուսումնասիրության համար։ Նա միաժամանակ հայտարարեց, որ ինքը մանրամասն կանդրադառնա այդ կտակին հետագայում[3], մի բան, որ անկատար մնաց։

Տասնյոթ տարի անց Եվստաթիոս Բոյիլասի կտակը հրատարակեց ռուս բյուզանդագետ Վ. Բենեշևիչը[4], ընդգծելով նրա նշանակությունը ոչ միայն Բյուզանդիայի, այլև հարևան երկրների պատմության ուսումնասիրության հա-

ղաքս, գրով եւ ոսկի մատանեաւ յազգէ յազգ մինչեւ յաւիտեան»), բյուզանդական պետությունը խախտում է այդ և Միջագետքի կառավարիչ է նշանակում Անհարոն բուլղարին, որը, ինչպես երևում է վերևում նշված հիշատակարանից, արդեն պրոէդրոսի աստիճանին էր բարձրացվել։ Այս հիշատակարանի վերջին տողերը մինչև այժմ ուսումնասիրողների կողմից ճիշտ չեն ընթերցվել և Պարադունավիս կոչումը, որն իրականում պատկանում է Անհարոնին, սխալմամբ վերագրվել է Վասիլիոս Մագիստրոսին, պատճառ դառնալով բազմաթիվ վրիպումների, որոնց մասին տե՛ս ստորև

[1] Իբերիայի կատապան Հովհաննես Մոնաստիրիոտեսը մեզ հայտնի է իր մեկ հունարեն արձանագրությամբ, որ փորագրել է տվել Անիում 1059 թվականին։ Այդ արձանագրությունից հայտնաբերվել են 65 բեկորներ, Ն. Մառի 1907, 1908 և 1914 թվականներին Անիում կատարած պեղումների ժամանակ։ Արձանագրության մեջ նա հիշվում է «Հայաստանի և Իբերիայի կատապան վեստարխոս Հովհաննես Մոնաստիրիոտես» ձևով (տե՛ս В. Н. Бенешевич, Три Анийские надписи, стр. 19)։

[2] Վասպուրականի Բագարատը նույն այն Բագարատն է, որ 1063 թվականին դարձյալ Անիի դուքս՝ նա թողել է արձանագրություն Անիի մայր տաճարի վրա, ուր, ի միջի այլոց, փորագրված է. «Անուամբ մեծաւն ամենակալի եւ ողորմութեամբ սուրբ եւ ինքնակալ Թագաւորին Կոստանդեա Դուկի կամ եղեւ իմ Բագրատա մագիստրոսին եւ արեւելից կատապանիս Վխկացոյ՝ առնել ողորմութիւն մայրաքաղաքիս Անւո» (տե՛ս В. Н. Бенешевич, Три Анийские надписи XI века из эпохи византийского владычества, стр. 22)։ Նրա մասին հիշատակում են երկու բյուզանդական պատմիչներ Սկիլիցես-Կեդրինոսը և Միքայել Ատտալիատեսը։ Սկիլիցեսը, պատմելով Հայաստանում և Վրաստանում Ալփ-Ասլանի հրոսակախմբերի կատարած ավերումների մասին, գրում է.— «Իբերիայի բարեբեր երկիրը լքվեց ավերվեց և ամայացավ... և բոլոր այն (երկրները), որոնք գտնվում էին նրա մոտիկ՝ Միջագետքն ու Խաղտիքը, ինչպես նաև Մելիտինեն և Հռոմեան և Եփրատ գետի մոտ գտնվող (քաղաքները), բացի դրանից նաև Արմենիական [թեմը] և Վասպուրականը... Հենց այն ժամանակ էլ Անին է ուղարկվում որպես դուքս մի հայազգի Բագարատ անունով» (տե՛ս Georgius Cedrenus, Historiarum compendium, vol II, Bonnae, 1839, p. 653). Միքայել Ատտալիատեսը գրում է, որ այս Բագարատը չկարողացավ պահպանել Անի քաղաքի պաշտպանությունը, դրա համար էլ Անին ընկավ սելջուկների ձեռքը (Հմմտ. Michaelis Attaliotae, Historia, Bonnae, 1853, p. 80—82). Հայազգի Բագարատին հիշատակում է նաև Մատթեոս Ուռհայեցին, ցույց տալով, որ նրա որդին կոչվել է Ամրամ (տե՛ս Ժամանակագրություն, էջ 148)։

[3] Bulletin de la Société Nationale des Antiquaires de France, 1890, p. 100—101.

[4] В. Н. Бенешевич, Завещание византийского боярина XI века, Журнал Министерства народного просвещения, 1907 г., май, Отдел классической филологии, стр. 219—231։

մար։ Բենեշևիչը հրատարակելով կտակի միայն հունարեն տեքստը և այն վերջացնելով «շարունակելի» բառով, ենթադրել էր տալիս, որ նպատակ է ունեցել մոտ ապագայում տալու նաև այդ կարևոր փաստաթղթի թարգմանությունն ու ուսումնասիրությունը։ Սակայն, ցավոք, այդ ևս չիրականացավ, գուցե և այն պատճառով, որ Բենեշևիչի իսկ խոսքերով. «Շատ մեծ դժվարություններ է ներկայացնում տեքստը հասկանալը, որովհետև նա վխտում է ուղղագրական և շարահյուսական բոլոր օրենքների աղաղակող ամենամեծ խախտումներով, նա զուրկ է որևէ ոճական մշակումից և բացի բազմաթիվ անհասկանալի բառերից ու արտահայտություններից, որոնք մեզ հայտնի են արդեն ուրիշ հուշարձաններից, նա բովանդակում է նորերն էլ, նույնպես անհասկանալի»[1]։

1911 թվականին Բոյիլասի կտակին անդրադարձավ բյուզանդագետ Պ. Բեզոբրազովը։ Նա նույնպես կրկնելով Բենեշևիչի խոսքերը տեքստը հասկանալու դժվարությունների մասին, իր կողմից ավելացրեց. «Հեշտ չէ որոշել քերականորեն ճիշտ տեքստը և բացատրել որոշ տերմիններ»[2], սակայն, «չնայած այդ բոլորին, լրիվ հնարավոր է հասկանալ Բենեշևիչի հրատարակած կտակի միտքը»[3]։ Եվ ահա Պ. Բեզոբրազովը իր հոդվածում շարադրում է այդ կտակի բովանդակությունը։

Վերջերս Բոյիլասի կտակին անդրադարձավ բյուզանդագետ Մ. Վ. Լևչենկոն։ Առանց տվյալ փաստաթղթի մասին որևէ ուսումնասիրություն կամ ծանոթագրություններ տալու, նա կտակը կրճատումներով ռուսերեն թարգմանությամբ լույս ընծայեց Բյուզանդիայի սոցիալ-տնտեսական պատմության վերաբերյալ փաստաթղթերի ժողովածուում[4]։ Պետք է ասել, որ Լևչենկոյի տված թարգմանությունը մեծապես մեղանչում է կտակի հունարեն տեքստին. այստեղ, առանց որևէ բացատրության, դեն են նետվել բազմաթիվ նախադասություններ ու պարբերություններ, որոնք, առավել կամ պակաս չափով, դժվար թարգմանելի էին։

1957 թվականին լույս տեսավ Ս. Վրիոնիսի փոքր ուսումնասիրությունը Բոյիլասի կտակի մասին, ինչպես և նրա կողմից կատարված կտակի հաջող թարգմանությունը անգլերեն[5]։ Վրիոնիսն իր ուսումնասիրության մեջ նպատակ չի դրել բարձրացնելու այդ հուշարձանը որպես աղբյուր սոցիալ-տնտեսական հարաբերությունների ուսումնասիրման, այլ իր գլխավոր ուշադրությունը սևեռել է կտակում հիշատակված անձնավորությունների ինքնությունը պարզելու և Բոյիլասի տիրույթների տեղադրման հարցը լուծելու վրա։ Այդ հարցերին մենք կանդրադառնանք ստորև։

---

[1] В. Н. Бенешевич, Завещание византийского боярина XI века. Журнал Мин. народного просвещения, 1907 г. май, Отдел классической филологии, стр. 221.

[2] П. Безобразов, Завещание Воилы, «Византийский Временник», том XVIII, вып. 1—4 (1911), Отдел III, стр. 107.

[3] Նույն տեղում։

[4] Сборник документов по социально-экономической истории Византии, Москва, 1951, стр. 169—173.

[5] Speros Vryonis, The will of a provincial magnate, Eustathius Boilas (1059), Dumbarton Oaks Papers, number eleven, Cambridge, Massachusetts, 1957, pp. 263—276.



Բոյիլաս բառը բազմիցս է հանդիպում վիմագիր արձանագրություններում, զանազան մետաղյա առարկաների վրա, և հատկապես, բյուզանդական սկզբնաղբյուրներում։ Բոյիլաս հին բուլղարների մոտ նշանակում էր «բոյարին»[1]։ Դեռևս 1799 թ. Հունգարիայի Նագի-Սենտ-Միկլոշ վայրում հայտնաբերված ոսկե գանձի մեջ կար և մի ոսկե թաս հունարեն տառերով գրված «բուիլա» և «ժուպան» մակագրությամբ[2]։ Այդ թասը և ընդհանրապես գանձը թվագրվում է 9-րդ դարի առաջին կեսով[3]։

«Բոյիլաս» տիտղոսը հանդիպում է նաև նախաբուլղարական վիմագիր արձանագրություններում, նույնպես հունարեն տառերով գրված և վերաբերում են 9-րդ դարի առաջին կեսին[4]։ Բյուզանդական պատմական սկզբնաղբյուրներում առաջին անգամ Բոյիլաս անունը հանդիպում է Թեոֆանեսի ժամանակագրության մեջ։ Երբ 798 թվականին թագուհի Իրենեն դուրս էր գալիս սուրբ Առաքելոց եկեղեցուց, նրան ուղեկցում էին չորս պատրիկներ, որոնց թվում էր և ոմն Կոնստանդին Բոյիլաս[5]։ Ավելի քան մեկ դար լռությունից հետո 923 թվականին, հիշատակվում է ոմն Վարդաս Բոյիլաս Խաղտիքի ստրատեգ, որ ձերբակալվեց Ռոմանոս Լեկապենոս կայսրին գահընկեց անելու անհաջող փորձի կապակցությամբ[6]։ Երկու տարի անց այդ գերդաստանի մի այլ ներկայացուցիչ, կայսերական պալատի սպա Կոնստանդին Բոյիլասը ծրագրում էր, միստիկոս Հովհաննեսի հետ միասին, տապալել Ռոմանոսին[7]։ Կոնստանդին 7-րդի թագավորության ժամանակ Փոքր Ասիայի Նիկոպոլիս քաղաքի կառավարն է հիշվում պրոտոսպաթար Գեորգիոս Բոյիլասը[8]։

Բոյիլաս գերդաստանի անվանը այնուհետև հանդիպում ենք 11-րդ դարի կեսերին, Կոնստանդին Մոնոմախ կայսեր (1042—1054 թթ.) ժամանակ, երբ ոմն Ռոմանոս Բոյիլաս, որ բարձր դիրքի էր հասել սենատում, գաղտնի գործողություններ էր սկսել, ուրիշ սենատորների հետ մեկտեղ, գահընկեց անելու համար Կոնստանդին Մոնոմախին, գահին տիրելու հավակնությամբ[9]։ Այդ դեպքը, ինչպես կարելի է եզրակացնել Սկիլիցես-Կեդրենոսի տվյալներից,

---

1 Տե՛ս Н. Кондаков, История и памятники византийской эмали, СПб, 1892, стр. 38.

2 V. Thomsen, Une inscription de la trouvaille d'or de Nagy-Szent-Miklos, Historisk-filologiske Meddelelser Det Kgl. Danske Videnskabernes Selskab, I, 1, Kjöbenhavn, 1917.

3 Տե՛ս J. Strzygowski, Zur Datierung des Goldfundes von Nagy-Szent-Miklos, Byzantinische Zeitschrift, Bd. 6, 1897, S. 586.

4 Տե՛ս F. Dvornik, Deux inscriptions greco-bulgares de Philippes, Bulletin de Correspondance Hellénique, 52 (1928) p. 128; V. Beševliev, Der Titel καναρτι κεῖνος, Byzantinische Zeitschrift, Bd. 32, I Halbjahrsheft, 1932, S. 13; Տե՛ս Karel Skorpil i Petr Nikov, Надписи от първото българското царство в източната часть на Балканския полуостров, часть III, Byzantinoslavica, t. III, fasc. 2, p. 366.

5 Theophanis Chronographia, ed. C. de Boor, t. I, Lipsiae, 1883, p. 474.

6 Georgii Monachi Vitae imperatorum recentiorum, Bonnae 1838, p. 896—897.

7 Ibidem, p. 903.

8 Constantine Porphyrogenitus, De administrando imperio, ed. G. Moravcsik and transl. R. H. J. Jenkins, Budapest, 1949, p. 212.

9 Georgii Cedreni Historiarum compendium, t. II, Bonnae, 1839, p. 605. Հմմտ. Michaelis Glycae, Annales, Bonnae, 1834, p. 597։

տեղի է ունեցել 1051—1052 թվականներին[1]։ Ռոմանոսն ու իր գործակիցները ձերբակալվեցին և, չնայած որ վերջիններս խիստ պատժի ենթարկվեցին, Ռոմանոս Բոյիլասը կարճատև աքսորից հետո վերահաստատվեց իր բարձր պաշտոնում։

Ահա սրանից հետո, 1059 թվականին, հանդես է գալիս Եվստաթիոս Բոյիլասը, որի կտակին է նվիրված մեր ներկա ուսումնասիրությունը։ Ինչպես երևում է այս կտակի տվյալներից, Եվստաթիոս Բոյիլասը Կոնստանդնուպոլսի Ոսկե պալատում պրոտոսպաթարիոսի աստիճան ուներ, մի բան որ ցույց է տալիս արքունիքում նրա բարձր պաշտոն ունենալը։ Նա միաժամանակ հյուպատոս էր, ուստի տեղ ուներ նաև սենատում։ Ս. Վրիոնիսը ենթադրում է, որ Եվստաթիոս Բոյիլասը մասնակցել է Ռոմանոս Բոյիլասի հետ Կոնստանդին Մոնոմախի դեմ 1051—1052 թվականին կազմակերպված դավադրությանը, որի անհաջող ելքից հետո աքսորվել է Կոնստանդնուպոլսից և Կապադովկիայում գտնվող իր տիրույթներից[2]։ Ս. Վրիոնիսն ենթադրում է, որ այդ դեպքին են վերաբերում Եվստաթիոս Բոյիլասի կտակի հետևյալ խոսքերը. «իսկ թե ինչքան դժվարություններ պատճառեցին ինձ խառնակ ժամանակները ես ոչ մի կերպ չեմ կարող պատմել, որովհետև ես անչափ տանջվել եմ դժբախտություններից, ինձ ամեն կողմից անդադար հարվածել են կոհակները, ինչպես նավաբեկյալին»։

Եվստաթիոս Բոյիլասը գրում է իր կտակում, թե ինքը կապադովկացի է և իր մոր ու կնոջ Աննայի հետ որոշ ունեցվածքով գաղթել է Կապադովկիայից, կտրելով մեկ ու կես շաբաթվա ճանապարհ։ Թե ինչու է Բոյիլասը գաղթել, այդ մասին նա ոչինչ չի գրում, բայց նա ընդգծում է, որ այն վայրերը, որոնք իր սեփականությունն են կազմել իր երկրորդ հայրենիքում՝ «ստացել է»։ Այդ բանը նա մի քանի անգամ է կրկնում և պարզ է, որ նա այդ ստացել է բյուզանդական կառավարության կողմից։

Ին՞չ է ստացել Բոյիլասը։ Նա թվարկում է իր անշարժ ունեցվածքը, որը կազմված է հետևյալ գյուղերից, պրոաստիոններից ու կալվածքներից. Եսայասի, Խոսպակրատ, Կոպտերիոն, Օփիզորունի (թարգմանաբար նշանակում է օձերի լեռ), Կուսներիա, Կալմուխի, Պարաքունիոն (թարգմանաբար նշանակում է լեռան ստորոտ կամ լեռան կից), Վարդա, Տանձուտ-Ջալիմա և Բուզինա։ Այն փաստը, որ Բոյիլասը հաստատվել է «այլ հավատք պաշտող և այլ լեզվով խոսող ժողովուրդների մեջ», որոնցից հիշատակվում են միայն հայերը—'Αρμένιοι և այն, որ նշված տեղանուններից մի քանիսը—Տանձուտ, Վարդա, Խոսպակրատ, Բիզանա (կարդա Վիզանա, հայերեն՝ Վժան) հնչում են հայերեն, ցույց է տալիս, որ Բյուզանդիայից դուրս պետք է փնտրել նշված բնակավայրերը։ Այս հարցը հասկանալի է, շատ մեծ կարևորություն ունի, հատկապես եթե նկատի ունենանք այն հանգամանքը, որ այդ վայրերի տեղադրման կապակցությամբ արտահայտվել են մի քանի իրարից տարբեր կարծիքներ։ Այսպես Հ. Օմոնը սխալմամբ Բոյիլասի կտակում հիշված վայրերը տեղադրում է Կապադովկիայում[3], ելնելով, ըստ երևույթին, այն բանից, որ Բոյիլասը կապադովկացի էր, և աչքաթող անելով այն հանգամանքը, որ իր իսկ

[1] Տե՛ս S. Vryonis, The will of a provincial magnate, Eustathius Boilas (1059), p. 273.

[2] Ibidem, p. 274.

[3] Bulletin de la Société Nationale des Antiquaires de France, 1890, p. 101.

անելով նա շաբաթ ու կես ճանապարհ է կտրել հաստատվելու համար իր նոր բնակավայրում՝ օտար ժողովուրդների մեջ։

Պ. Բեզոբրազովը, առանց որևէ հիմքի հայտարարում է, որ, իբր, Բոյիլասը գաղթել է Անտիոքի թեմը[1]։ Իսկ բուլղար պատմաբան Վ. Զլատարսկին, ելնելով այն բանից, որ վանական Թեոդուլոսի հիշատակարանում կայսրից և պատրիարքից անմիջապես հետո հիշատակվում են Եդեսիայի կատապանի և ապա Անտիոքի դուքսի անունները, ենթադրում էր, որ նշված վայրերը հավանաբար գտնվում էին Եդեսիա քաղաքի շրջակայքում[2]։ Միմիայն Ս. Վրիոնիսն եկավ այն ճիշտ եզրակացության, որ Կապադովկիայից արևելք պետք է փնտրել Բոյիլասի երկրորդ հայրենիքը։ Բոյիլասի կալվածների շարքում հիշված Կալմուխի տեղանվան հիման վրա նա գալիս է այն եզրակացության, որ Բոյիլասը հաստատվել է Տայքում[3]։ Այդ տեսակետից Բոյիլասի կտակը մեծ արժեք է ներկայացնում ոչ միայն Հայաստանի, այլև Վրաստանի սոցիալ-տնտեսական հարաբերությունների ուսումնասիրության համար։

Նշված Կալմուխի մասին որոշ տվյալների մենք հանդիպում ենք բյուզանդական սկզբնաղբյուրներում։ Այսպես, օրինակ, Անտիոքի պատրիարքության ենթակա եպիսկոպոսությունների ցուցակում մենք կարդում ենք, որ Իբերիայում Անտիոքի պատրիարքին են ենթարկվում հետևյալ պրոտոտրոնները. Ալտալտը, Սպորտանոսը, որոնք գտնվում են Պանակերից հյուսիս և Ջեբարդին, որը գտնվում է Կալմալխի հարավում[4]։

Վարդան Արևելցին գրում է, որ Սմբատի որդիներ Աշոտ Մսակերն ու Շապուհը «ելեալք զկողմամբն Շիրակայ՝ հարին զզօրսն Իսմայելի՝ որ անդ, և դրաւեցին յինքեանս զՇիրակ և զԱշոցք, և զգաւառն Տայոց: Եւ այսպէս բատ բախտին ելեալ Աշոտի քաջի՝ շինէ զԿամախ, և բնակեցուցանէ ի նմա զընտանիս իւր»[5]։ Պարզ է, որ Աշոտի կողմից կառուցված Կամախը չպետք է շփոթել Անի-Կամախի հետ. այն Տայքի Կալմախին է, որ Բոյիլասի կտակում հանդես է գալիս Կալմուխի ձևով, և միանգամայն ճիշտ են Մ. Բրոսեն[6] և Մարկվարտը[7], որոնք Վարդանի Կամախը տեղադրում են Տայքում։ 11-րդ դարի վրաց պատմիչ Լեոնտի Մրովելին իր «Վկայաբանություն Արչիլի» աշխատության մեջ խոսում է Տայքում Կամախ ամրոցի կառուցման մասին։ Վրացերեն բնագրում այդ

---

[1] П. Безобразов, Завещание Воилы, стр. 107.

[2] Տե՛ս V. N. Zlatarski, Една датирана приписка на гръцки от средата на XI век. Byzantinoslavica, t. I, 1929, p. 25.

[3] S. Vryonis, o. c., p. 275 Ավելի ճիշտ Կղարջքում; հմմտ. Ernst Honigmann, Die Ostgrenze des byzantinischen Reiches von 363 bis 1071 nach griechischen, arabischen, syrischen und armenischen Quellen, Bruxelles, 1935, S. 220 և հաջորդ։

[4] Տե՛ս V. Beneševič, Die byzantinischen Ranglisten, Byzantinisch-Neugriechische Jahrbücher, Athen, 1926, Bd. 5, 1 und 2 Heft, S. 106. Վատիկանի մատենադարանի № 3 հայերեն ձեռագրի 270-րդ էջում գտնվում է եպիսկոպոսությունների ցուցակ, որը թարգմանված է հունարենից 1180 թվականին։ Այստեղ մեջ են բերված վերը հիշատակված տեղանունները։ Տե՛ս F. C. Conybeare, On some Armenian Notitiae, Byzantinische Zeitschrift, Bd. 5, 1896, S. 126.

[5] Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի, Վենետիկ, 1862, էջ 76։

[6] Տե՛ս M. Brosset, Additions et éclaircissements a l'histoire de la Géorgie, depuis l'antiquité jusqu'en 1469, S. Pétersbourg, 1851, p. 159, ծանոթ. 5:

[7] J. Marquart, Osteuropäische und Ostasiatische Streifzüge, Leipzig, 1903, S. 404, ծանոթ. 2:

տեղանունը տառադարձված է նաև Կալմախի ձևով[1]: Արքայազն Վախուշտիի Աշխարհագրության մեջ ասվում է. «Արտանուջի գետի՝ [Ճորոխին] միախառնվելու տեղից վերև, Ճորոխին միանում է Թորթումի լճից հոսող ջուրը, որ ուղղվում է դեպի արևելք: Այս ձորի վրա է Կալմախի բերդը, որ կառուցել են պղեշխները (պատիաշխնի) մեծաշեն, ամուր և անառիկ, (և) որ Տաոյի էրիսթավության [կենտրոնն] էր»[2]: Կալմախի ռազմական տեսակետից մեծ կարևորություն ունենալը շեշտված է նաև ժամանակակից հեղինակների կողմից, որ Իշխանը, Կալմախը և Պանասկերը տիրում են Օլթիի և Բարդուսի հովիտների վրա[3], և պատահական չէ, որ դուքս Միքայելը, ուրիշ երկու գյուղերի հետ միասին Բոյիլասից խլել է նաև Կալմուխին:

Կովկասի հինգ վերստանոց քարտեզի վրա մեզ հաջողվեց գտնել Բոյիլասին պատկանող գյուղերից մի քանիսը ևս, որոնց անունները բարեբախտաբար շատ չեն փոխվել: Նրանք գտնվում են Արտանուջի շրջանում: Այսպես, օրինակ, Բոյիլասի կտակում հանդիպող Տանձուտ գյուղը, որ հանդիսանում էր միաժամանակ Բոյիլասի նստավայրը, անկասկած ժամանակակից Տանձոտ գյուղն է Արտանուջից մոտ տաս կիլոմետր հարավ-արևելք: Բոյիլասի կտակում ասված է, որ Տանձուտը այլ կերպ կոչվում էր Զալիմա (Ջալիմա): Կովկասի հինգ վերստանոց քարտեզի վրա ցույց է տրված Տանձոտին կպած Զալղինա վայրը, որը Ն. Մառը անվանում է Տանձոտի ավանը[4]: Տանձոտում գտնվում է վրացերեն մի արձանագրություն, որը վերաբերում է սուրբ Մարինա եկեղեցու շինարարությանը, թվագրված քրոնիկոնի 531 (1312) թվականով: Այդ արձանագրության մեջ եկեղեցու շինողը անվանված է Սախմդավլե Կալմախելի[5], այն է Սախմդավլե Կալմախեցի, անկասկած Բոյիլասի կտակում հիշատակված Կալմուխի վայրից, որը գտնվում էր Տանձոտից 15—20 կիլոմետր հեռավորության վրա: Տանձոտից հինգ կիլոմետր արևմուտք գտնվում է Կապտախոր գյուղը, հավանաբար Բոյիլասի կտակի Կոպտերխոնը[6]: Արտանուջից հինգ կիլոմետր արևելք հինգ վերստանոց քարտեզի վրա ցույց է տրված Ուստո գյուղը: Ն. Մառը Կղարջքում և Շավշեթիայում կատարած ճանապարհորդության օրագրում ճշտում է այդ գյուղի անունը, ոչ թե Ուստո,

[1] Տե՛ս Քարթլիս ծխովրեբայի կամ վրաց պատմության հին հայերեն թարգմանությունը, վրացերեն բնագիրը և հին հայերեն թարգմանությունը ուսումնասիրությամբ և բառգրքով լույս ընծայեց Իլիա Աբուլաձե, Թբիլիսի, 1953, էջ 204: Հմմտ. Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատ. Ա, Երևան, 1934, էջ 196: Կալմախի անվան ծագման մասին տե՛ս Н. Я. Марр и Я. И. Смирнов, Вишапы, Ленинград, 1931, стр. 19—21.

[2] Պրոֆ. Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր Գ, Երևան, 1955, էջ 84:

[3] Տես W. E. D. Allen, The march-lands of Georgia, The Geographical Journal, vol. LXXIV, № 2, August, 1929, p. 154.

[4] Георгий Мерчул, Житие св. Григория Хандзтийского, Грузинский текст, введение, издание, перевод Н. Марра, с дневником поездки в Шавшию и Кларджию. Тексты и разыскания по армяно-грузинской филологии, книга VII, СПб. 1911, стр. 106.

[5] Նույն տեղում, էջ 105:

[6] Ս. Վրիոնիսը ենթադրում է, որ կտակում հիշատակված Կոպտերխոնը դա Կապետրու վայրն է, ուր 1049 թվականին տեղի ունեցավ ճակատամարտ բյուզանդացիների և սելջուկների միջև (Տե՛ս Cedrenus, t. II, p. 578 և հաջորդ), միաժամանակ շեշտելով, սակայն, որ այդ նույնացումը հնարավոր չէ հաստատել: Տե՛ս հիշ. աշխ., էջ 275: Սակայն Կապետրուն գտնվում էր ոչ թե Տայքում, ինչպես Վրիոնիսն է գրում, այլ Արծնի մոտ:

այլ Ուծոտ[1], որի տակ հնարավոր է ենթադրել Բոյիլասի կտակում հանդիպող Ուզիկի գյուղը։ Արտանուջի շրջանում հինգ վերստանոց քարտեզի վրա ցույց են տրված իրարից ոչ շատ հեռու գտնվող երկու գյուղ, մեկը կոչվում է Վարգասխեվի, մյուսը՝ Վարգխեվ, որոնցից մեկի տակ պետք է փնտրել Բոյիլասի կտակում հանդիպող Վարգա վայրը (խեվի վերջավորությունը վրացերեն նշանակում է ձոր)։

861 թվականին վախճանված սուրբ Գրիգոր Խանձիթեցու վարքի մեջ, որը գրված է նրա մահից 90 տարի հետո, Խանձիթի շրջակայքում հիշատակվում է Օպիզա վայրը, ուր կար հռչակավոր վանք[2]։ Վրաց Բագրատ 4-րդ թագավորի մի հրովարտակը, որը գրված է 1027 թվականին, վերաբերում է հենց այս Օպիզայի վանքի տիրույթների սահմանների հարցին[3]։ Կովկասի հինգ վերստանոց քարտեզի վրա Արտանուջից հյուսիս ցույց են տրված երկու վայր Օպիզա և Օպիսչալա։ Սրանցից մեկը, հավանաբար, կապ ունի կտակում հանդիպող Օփիզո-բունի տեղանվան հետ (բունի հունարեն նշանակում է լեռ)։ Նույն քարտեզի վրա այդ շրջանում ցույց են տրված նաև Խոզաբիր և Խոզաբարտ գյուղերը, որոնցից մեկը պետք է, հավանաբար, համապատասխանի կտակի Խոսպակրատ գյուղին։

Ինչպես տեսնում ենք Բոյիլասի տիրույթները գտնվելիս են եղել Կղարջքում, ավելի կոնկրետ Արտանուջի շրջանում։ Այդ բոլոր շրջանները ենթարկվեցին բյուզանդական ագրեսիային Տայքի կուրապաղատ Դավիթ 3-րդի մահից՝ 1001 թվականից հետո. Բյուզանդիայի Վասիլ 2-րդ կայսեր և վրաց թագավոր Գեորգի 1-ի միջև 1023 թվականին կնքված պայմանագրի համաձայն դրանք անցան Բյուզանդիայի ձեռքը։

Բոյիլասի կտակում հիշատակված տեղանունների ճշտումը մեզ հնարավորություն է տալիս հանգելու և ուրիշ եզրակացությունների։ Տարածված է եղել այն կարծիքը, որ Կղարջքի հայկական բնակչությունը արդեն 11-րդ դարում լրիվ քաղկեդոնիկ էր դարձել, չնայած ընդհուպ մինչև 11-րդ դարի վերջը շարունակում էր վրացերեն լեզվին զուգահեռ պահպանել հարազատ հայերեն լեզուն[4]։ Բոյիլասի կտակը ցույց է տալիս, որ 11-րդ դարի կեսերին Կղարջքի հայկական բնակչությունը դեռևս լրիվ քաղկեդոնական չէր, այլապես Բոյիլասը չէր գրի իր կտակում, որ ինքը բնակվեց այլ հավատք պաշտող ժողովուրդների մեջ։ Վրացիները բյուզանդացիների համար այլադավաններ չէին, այդպիսիք չէին կարող լինել նաև քաղկեդոնիկ հայերը։ Պարզ է, որ տվյալ դեպքում Բոյիլասը նկատի ունի միաբնակ հայերին։ Իսկ որ քաղկեդոնականները և միաբնակները իրար այլադավաններ էին համարում, դա կասկածի ենթակա չէ։ Հայոց Գրիգոր Դ. Տղա կաթողիկոսը Բյուզանդական կայսր Իսահակ Անգելոսին գրած նամակում վերջինիս մեղադրում էր այն բանի մեջ, որ նա բռնի «այլադավան» է դարձնում Բյուզանդիայում ապրող հայերին[5], այսինքն որ նա նրանց քաղկեդոնիկ է դարձնում։

---

[1] Георгий Мерчул, стр. 103.

[2] Նույն տեղում, էջ 89։

[3] Տե՛ս Д. П. Пурцеладзе, Грузинские церковные гуджары (грамоты), Тифлис, 1881, стр. 120—121.

[4] Георгий Мерчул, стр. XVI. (Ն. Մառի առաջաբանը)։

[5] Տե՛ս Հ. Բարթիկյան, Նոր նյութեր Կիլիկիայի հայկական պետության և Բյուզանդիայի փոխհարաբերությունների մասին, «Բանբեր Մատենադարանի», № 4, 1958, էջ 287։

Բոյիլասի Կղարջքում բնակվելու հանգամանքը հաստատում է Արիստակես Լաստիվերտցու հիշատակությունն այն մասին, թե Հայաստանում «ինքնակալ թագաւորն հոռոմոց Վասիլն... տիրէ բազում գաւառաց և բերդից և քաղաքաց։ Եւ կացուցանէ ի վերայ նոցա գործակալս և դատաւորս և վերակացուս»[1], կամ «թագաւորեաց զկնի Վասիլն Կոստանդին... և զիշխանս որ գաւառակալք էին, զոր մեծն Վասիլ կարգեալ էր, ի նոյն հաստատեաց»[2]։ Ահա Բոյիլասը ևս, ամենայն հավանականությամբ, մեկն էր այդ «գաւառակալ» իշխաններից։

Սովորաբար բյուզանդագետները շեշտում են նշված ժամանակաշրջանում Հայաստանի և Վրաստանի նկատմամբ Բյուզանդիայի վարած քաղաքականության միայն մեկ կողմը, այն, որ նպատակ ունենալով այդ երկրները թուլացնել քաղաքական և ռազմական տեսակետից, նա աշխատում էր տեղական ֆեոդալներին, կամավոր կամ բռնի ճանապարհով գաղթեցնել Բյուզանդիա։ Այդպիսի քաղաքականության արտահայտությունն է հանդիսանում Վասպուրականի թագավոր Սենեքերիմի գաղթեցումը Կապադովկիա 1021 թ., Անիի թագավոր Գագիկի գաղթեցումը Կոնստանդնուպոլիս 1045 թ., Կարսի թագավոր Գագիկի գաղթեցումը Կիլիկիա և այլն։ Հայտնի է նմանապես, որ Բյուզանդիան իր կողմից գրավված շրջաններում հաստատում էր բյուզանդական դուքսերի, կատապանների և մագիստրոսների իշխանությունը։ Բոյիլասի կտակը սակայն ցույց է տալիս, որ միաժամանակ տարվում էր նաև բյուզանդական ֆեոդալների, ամենայն հավանականությամբ, բռնի կերպով հայկական և վրացական հողերի վրա բնակեցվելու քաղաքականություն, նպատակ ունենալով բյուզանդական տիրապետության պատվարներ ստեղծել նվաճված ծայրամասերում, մի բան, որ հանդիպում էր տեղական բնակչության դիմադրությանը։

Եվստաթիոս Բոյիլասը շարադրում է իր կտակը նախ և առաջ գանգատվելով խառը ժամանակներից, որոնք անչափ վիշտ են պատճառել իրեն։ Այնուհետև նա անդրադառնում է այն տառապանքներին, որոնք հասել են նրան իր բնակած շրջանի քաղաքական և ռազմական ղեկավարի՝ Միքայել դուքսի և նրա որդի Վասիլիոս մագիստրոսի[3] կողմից։ Վասիլիոս մագիստրոսը հիշված է նաև կտակը պարունակող ձեռագրի գրիչ Թեոդուլոս վանականի հիշատակարանում, որտեղ մեկ առ մեկ թվարկված են Բյուզանդիայի արևելյան նահանգների քաղաքական և ռազմական իշխանավորները, իրենց ենթակա շըրջանների հետ միասին։ Կտակի վերջում նրա պայմանների ճշգրիտ կատարմանը հետևող հոգաբարձուների թվում հիշատակված են ինչպես այդ նույն Վասիլիոս մագիստրոսը, ապա նաև վերջինիս եղբայրը, նույնպես ռազմական գործիչ, վեստարխոս Ցարեսմանեսը։ Այս վերջին (Ցարեսմանես-Փարսման) անունից դատելով, կարելի է եզրակացնել, որ 11-րդ դարի կեսերին Կղարջքի քաղաքական ու ռազմական ղեկավարությունը գտնվում էր այնպիսի մարդկանց ձեռքին, որոնք ծագումով հայ էին (գուցե և վրացադավան)[4] կամ վրացի

---

[1] Արիստակես Լաստիվերտցի, Պատմություն, էջ 4—5։

[2] Նույն տեղում, էջ 11։

[3] «Դուքս» կամ «մագիստրոս» դրանք բյուզանդական տերմիններ են։ Այդ մեծամեծները, ամենայն հավանականությամբ, տեղում կոչվել են «տանուտերներ»։ Վրաց Բագրատ 4-րդ թագավորի 1027 թվականի հրովարտակում, որը վերաբերում է Օպիզա վանքի հողերին, Տայքի և Կղարջքի վերակացուները անվանված են «տանուտերներ»։ Տե՛ս Д. П. Пурцеладзе, Грузинские церковные гуджары (грамоты), Тифлис, 1881, стр. 121.

[4] Մի քանի տասնամյակ հետո Թեոդոսուպոլսի թեմայի դուքս դարձող Գրիգոր Բակուրյանը

Միքայել դուքսի և նրա որդիներ Վասիլիոս մագիստրոսի և վեստարխոս Ցարեմանեսի անձնավորությունների բացահայտման գործով զբաղվել է Ս. Վրիոնիսը։ Բյուզանդագետների մեջ երկար վեճեր են եղել Վասիլիոս մագիստրոսի անձնավորության շուրջը, որոնց հիմնական պատճառն այն է, որ բոլոր ուսումնասիրողները «Պարադունավիս» մականունը, որ հիշատակվում է վանական Թեոդուլոսի վերևում մեր կողմից մեջ բերված հիշատակարանում, վերագրում էին ոչ թե Ահարոն մագիստրոսին, ինչպես իրականում է, այլ այս Վասիլիոս մագիստրոսին[1]։ «Պարադունավիս» հունարեն նշանակում է «Մերձդանուբյան»։ Բյուզանդական պատմիչներ Միքայել Ատտալիատեսը, Զոնարան և Սկիլիցես-Կեդրինոսը պատմում են որ, 1065 թվականին Ուզերը անցնելով Իստրոս (Դանուբ) գետը, գերի վերցրին մերձդանուբյան (Պարիստրիոն) քաղաքների արխոններ Նիկիփորոս Վոտանիատեսին և մագիստրոս Վասիլիոս Ապոկապեսին[2]։ Ռումինացի բյուզանդագետ Ն. Բանեսկուն վանական Թեոդուլոսի հիշատակարանում նշված Վասիլիոս մագիստրոսին, որին նա վերագրում է «Պարադունավիս» մականունը, նույնացնում է վերոհիշյալ մերձդանուբյան քաղաքների արխոն Վասիլիոս Ապոկապեսի հետ և պնդում, որ «Պարադունավիս»-ը ոչ թե մականուն է, ինչպես ենթադրում էր հույն բյուզանդագետ Լամբրոսը[3], այլ «Պարիստրիոն» (մերձդանուբյան) բառի էկվիվալենտը[4]։

Բուլղար բյուզանդագետ Վ. Զլատարսկին հանգեց այլ եզրակացության[5]։ Նրա կարծիքով, Թեոդուլոսի հիշատակարանում հանդիպող մագիստրոս Վասիլիոս «Պարադունավիսը» ոչ մի դեպքում չէր կարող լինել մերձդանուբյան քաղաքների դուքս՝ 1059 թվականի ապրիլին (հիշատակարանի գրության ժամանակը)։ Նա չէր կարող Վասիլիոս Ապոկապեսի հետ նույն անձնավորությունը լինել, որովհետև վերջինս մագիստրոսի կոչում ստացավ 1064 թվականին, իսկ նույն դարի 50-ական թվականներին նա պատրիկի կոչում ուներ։ Բացի դրանից, շարունակում է նա, 1059 թվականի վերջում և 1060 թ. որպես մերձդանուբյան երկրների արխոն հիշատակվում է Ռոմանոս Դիոգենեսը։ Վ. Զլատարսկին միանում է հույն բյուզանդագետ Լամբրոսի կարծիքին, որի համաձայն Թեոդուլոսի հիշատակարանում հանդիպող «Պարադունավիս»-ը պարզապես այնտեղ հիշատակվող մագիստրոս Վասիլիոսի մականունն է և որ չի

---

վրացադավան հայ էր, ծագումով Տայքից։ Տե՛ս Н. Марр, Аркаун, Монгольское название христиан, в связи с вопросом об армянах халкедонитах. Отдельный оттиск из «Византийского Временника», том XII, 1905, стр. 21, 24.

[1] Այդ մասին մանրամասն տե՛ս Р Бартикян, Относится ли прозвище Παραδούναβις к магистру Василию в памятной записи монаха Феодула (1059 г.)?, ՀՍՍՌ ԳԱ «Տեղեկագիր», 1959 թ., № 8։

[2] Տե՛ս Michaelis Attaliotae Historia, Bonnae, 1853, p. 83; Ioannis Zonarae Epitome historiarum, t. III, Bonnae, 1897, p. 678; Georgii Cedreni Historiarum compendium, t. II, Bonnae 1839, p. 654.

[3] Σπ. Λάμπρος, Ἐνθυμήσεων ἤτοι χρονικῶν σημειωμάτων συλλογὴ πρώτη. «Νέος Ἑλληνομνήμων», VII (1910), σελ. 130-131։

[4] N. Bănescu, Les premiers temoignages byzantins sur les Roumains du Bas-Danube, Byzantinisch-Neugriechische Jahrbücher, Bd. III, 3 und 4 (Doppel-) Heft, 1922, S. 294—295. Նույնի, La question du Paristrion, Byzantion, t. VIII (1933), fasc. I. p. 294.

[5] N. V. Zlatarski, Една датирана приписка на гръцки от средата на XI век, Byzantinoslavica, t. I, 1929, p. 28, sq.

կարելի այն ընդունել որպես կոնկրետ շրջանի վրա իշխանություն ունեցող անձնավորության տիտղոս։ Վ. Զլատարսկին ենթադրում է, որ Թեոդուլոս վանականի հիշատակարանում հանդիպող մագիստրոս Վասիլիոսը, դա Մատթեոս Ուռհայեցու ժամանակագրության մեջ հիշատակված բուլղար թագավոր Ալուսիանի որդի Վասիլն է, որը Ռոմանոս Դիոգենեսի թագավորության սկզբում Եդեսիայի դուքսն էր[1]։ «Պարադունավիս» մականունը, ըստ Զլատարսկու, ցույց է տալիս Վասիլի բուլղարական ծագումը։ Սակայն Զլատարսկին ուշադրություն չէր դարձնում այն հանգամանքի վրա, որ այդ Վասիլի եղբայրը կոչվում էր Ցարեմաննես-Փարսման, մի անուն, որ դժվար թե բուլղարների մոտ տարածված լիներ։ Այդ անունը ցույց է տալիս, որ Ցարեմաննեսը, ինչպես և, հասկանալի է, նրա եղբայր Վասիլիոսը և նրանց հայր Միքայելը կարող էին, ինչպես վերևում ասեցինք, կամ հայկական, կամ էլ վրացական ծագում ունենալ։

Ս. Վրիոնիսն հիմնականում ընդունում է Ն. Բանեսկուի եզրակացությունները և միաժամանակ փորձում է բացահայտել կտակում հանդիպող մյուս երկու անձնավորություններին՝ մագիստրոս Վասիլիոսի հայր՝ դուքս Միքայելին և վերջինիս մյուս որդուն՝ վեստարխոս Ցարեմաննեսին։ Նա գրում է. Մագիստրոս Վասիլիոսը նույն մագիստրոս Վասիլիոս Ապոկապեսն է։ Կտակում հիշատակված մագիստրոս Վասիլիոսի եղբայր վեստարխոս Ցարեմաննեսը՝ նույն վեստարխոս[2] Ցարեմաննես Ապոկապեսն է, որը 1069 թվականին Ռոմանոս Դիոգենես կայսրի կողմից նշանակվեց Հիերապոլիս քաղաքի ստրատեգ։ Ինչ վերաբերում է կտակում հիշատակված դուքս Միքայելին, մագիստրոս Վասիլիոսի և վեստարխոս Ցարեմաննեսի հորը, Վրիոնիսի կարծիքով նա հիշատակված է Մատթեոս Ուռհայեցու մոտ, որի ժամանակագրության մեջ նա հանդես է գալիս որպես «Ապուքապ, հայր Վասլի»։

Ե՛վ Բանեսկուի, և՛ նրան հետևող Ս. Վրիոնիսի եզրակացությունները, որոնք առաջին հայացքից կասկած չեն հարուցում, հեռու են համոզեցուցիչ լինելուց։ Մատթեոս Ուռհայեցու մոտ հիշատակված Ապուքապը, որին Վրիոնիսը նույնացնում է Բոյիլասի կտակում նշված դուքս Միքայելի հետ, 1035—1038 թվականներին Եդեսիայի քաղաքի դուքսն էր և այդ պաշտոնում հիշատակվում է դեռևս 1065 թվականին[3]։ Սկիլիցես-Կեդրինոսը հիշատակում է, որ 1038 թվականին Եդեսիա քաղաքին տիրում էր վրացական ծագում ունեցող Վարազվաչեն[4]։ Եթե այս Վարազվաչեն և Ուռհայեցու մոտ հիշատակված

[1] Հմմտ. Մատթէոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898, էջ 195։

[2] Վրիոնիսը սխալմամբ գրում է վեստարխոս։ Նա հենվում է Սկիլիցես-Կեդրինոսի ժամանակագրության վրա, ուր այդ Ցարեմաննը ոչ թե վեստարխոս է հիշատակված, այլ վեստ։ Տե՛ս Georgius Cedrenus, t. II, Bonnae 1839, p. 675; հմմտ. Michaelis Attaliotae Historia, Bonnae, 1853, p. 116:

[3] Սակայն Մատթեոս Ուռհայեցու մոտ մենք կարդում ենք, որ ՇԵ (1056) թվականին Իսահակ Կոմնենոսը «երթեալ զտունկ քաղաքին Ուռհայոյ, որում անուն էր Տուկիծ... և առեալ զթագն դնէր ի գլուխ Տուկծին և նստոյց զնա յաթոռ թագաւորութեանն» (էջ 126—127)։ Թեոդուլոս վանականի հիշատակարանում 1056 թ. ապրիլին որպես Եդեսիայի դուքս է հիշատակվում Հովհաննես Դուկիծեսը, ըստ երևույթին, Ուռհայեցու Տուկիծը։ Ամենայն հավանականությամբ, 1059 թ., երբ Դուկասը դառնում է կայսր, Եդեսիայի իշխանությունը նորից տրվում է Վասիլի հայր Ապուքապին։ Ուռհայեցու ՇԵ թվականը ճիշտ չէ, պետք է լինի ՇԸ։

[4] Georgii Cedreni, t. II, p. 520. Ուռհա քաղաքի պատմության մասին տես Լորանի հետաքրքիր ուսումնասիրությունը. J. Laurent, Des Grecs aux Croisés. Etudesur l'histoire d'Edesse entre 1071 et 1098, Byzantion, t. I, 1924, p. 367—449.

Ապուքապը նույն անձնավորությունները են (Ապուքապը ոչ թե անուն է, այլ ազգանուն), ապա Վրիոնիսի այն ենթադրությունը, որ դուքս Միքայելը Ուռհայեցու մոտ հիշատակված Ապուքապն է, պարզ է, որ չի կարող ճիշտ լինել։ Այդ բոլորից զատ, մենք չունենք որևէ փաստ այն մասին, որ Եդեսիայի դուքս Ապուքապը, կամ էլ նրա որդի Վասիլը ունենային որևէ առնչություն Կղարջքի հետ 11-րդ դարի 50-ական թվականների վերջում[1]։ Բայց ամենակարևորը, որը կասկածի տակ է դնում Ն. Բանեսկուի և Ս. Վրիոնիսի եզրակացությունները, դա հանդես եկող ժամանակագրական հակասությունն է։ Բոյիլասի կտակի տվյալների համաձայն, դուքս Միքայելը վախճանվել է 1059 թվականի ապրիլ ամսից (կտակի գրության ժամանակը) առաջ։ 1065 թվականին, ինչպես ցույց է տալիս Մատթեոս Ուռհայեցին, «զօրք Ուզացն սրով յարձակեցան զհետ մեծաւ կոտորածով և կալան զՎասիլ զօրապետն Հոռոմոց և տարան զնա ի գերութիւն յաշխարհն իւրեանց»[2]։ Նույն դեպքը արձանագրված է նաև, ինչպես վերևում ցույց տվեցինք, բյուզանդական պատմիչներ Ատտալիատեսի, Զոնարայի և Սկիլիցես-Կեդրինոսի մոտ, նույն՝ 1065 թվականի տակ։ Բայց Ուռհայեցին մեզ հաղորդում է մանրամասնություններ, որոնք չունեն բյուզանդական աղբյուրները։ Պարզվում է, որ Ապուքապի որդի Վասիլին հաջողվում է փախչել գերությունից և գնալ նախ թագավոր Տուկիծի մոտ։ Այնուհետև «եկեալ Վասիլն առ Ապուքապ հայրն իւր ի յՈւռհա, և հայրն և ամենայն ազգ իւր լցան ցնծութեամբ»[3]։ Այդ բոլորը տեղի են ունենում 1065 թվականին։ Այսպիսով Վասիլի հայր Ապուքապը, (որին Ս. Վրիոնիսը նույնացնում է Բոյիլասի կտակի դուքս Միքայելի հետ), 1065 թվականին դեռ ողջ էր։ Ս. Վրիոնիսը չի նկատում, որ Բոյիլասի կտակում (1059 թ.) հիշատակված դուքս Միքայելը և Ուռհայեցու մոտ հիշատակված «Վասլի հայր Ապուքապը» չեն կարող նույն անձնավորությունները լինել, որովհետև Բոյիլասի կտակի տվյալների համաձայն, 1059 թվականի ապրիլին դուքս Միքայելը արդեն մեռած էր։ Հետևաբար տրամաբանական է պնդել, որ դուքս Միքայելի որդի Վասիլիոս մագիստրոսը ոչինչ ընդհանուր չունի Ուռհայեցու Ապուքապի որդի Վասիլի հետ, բյուզանդական աղբյուրների Վասիլիոս Ապոկապեսի հետ։

Այս երկար վիճաբանությունները տեղի չէին ունենա, իհարկե, եթե ինչպես վերևում ասացինք, ճիշտ ընթերցվեր վանական Թեոդուլոսի հիշատակարանը։ Այնտեղ «Պարադունավիս» բառը վերաբերում է ոչ թե Վասիլին, այլ Ահարոն մագիստրոսին։ Վ. Զլատարսկին միանգամայն ճիշտ էր, երբ գրում էր, որ «Պարադունավիս» մականունը կրող մարդը կարող էր բուլղարական ծագում ունենալ (այստեղ կարևորություն չունի այն հանգամանքը, որ նա այդպիսին էր համարում Վասիլին)։ Իսկապես որ Ահարոն մագիստրոսը բուլղար է եղել, այդ մասին վկայում են ոչ միայն բյուզանդական, այլև հայկական սկզբնաղբյուրները։

Ինչպես մենք վերևում նշեցինք, Ս. Վրիոնիսը դուքս Միքայելի մյուս որդուն վեստարխոս Ֆարեսմանեսին նույնացնում է Սկիլիցես-Կեդրինոսի մոտ

---

[1] Ուռհայեցին հաղորդում է, որ Ապուքապ իշխանը նախկինում եղել է վրաց Դավիթ կուրապաղատի վրանապահը և ստացել է Եդեսիա քաղաքը Ռոմանոս կայսրից ՆՁԱ թվականին (էջ 57, 64)։

[2] Մատթեոս Ուռհայեցի, էջ 152։

[3] Նույն տեղում, էջ 153։

հիշատակված, ծագումով վրացի վեստ Ցարեմաննես Ապոկապեսի հետ, որին 1069 թ. կայսրը նշանակեց Հիերապոլսի ստրատեգ[1]։ Իհարկե, ընդունելով, որ դուքս Միքայելը և նրա որդի մագիստրոս Վասիլիոսը պատկանում էին Ապոկապեսների գերդաստանին, շատ հավանական պետք է լիներ նույնացնել նաև կտակի վեստարխոս Ցարեմաննեսին Սկիլիցես-Կեդրինոսի հիշատակած վեստ Ցարեմաննես Ապոկապեսի հետ։ Բայց երբ մերժվում է այդպիսի հնարավորությունը, պարզ է, որ Ցարեմաննեսի Ապոկապես ազգանունը քիչ բան է տալիս։ Մեզ մնում է միայն այն, որ երկուսն էլ կոչվում են Ցարեմաննես, մեկն ունի վեստարխոսի, մյուսը վեստի աստիճան։

Եվստաթիոս Բոյիլասին, ահա, բավականին նեղություն են պատճառել վերոհիշյալ Միքայել դուքսը և նրա որդին մագիստրոս Վասիլիոսը, որոնց կառավարչության տակ էին գտնվում Բոյիլասի կալվածքները։ Նա ստիպված է եղել իր տիրույթների մի մասը վաճառել իր տիրոջը, նրանց արժեքի դիմաց ստանալով միայն մի գրություն, բայց ոչ մի հատիկ դրամ։ Բացի այդ, իր տերերին տվել է նա «պարտքով» դրամական մեծ գումար (քսան հինգ լիտր ոսկի, այն է հազար ութհարյուր ոսկեդրամ), որը նույնպես 1059 թվականին (կտակի գրության տարում) դեռ չէր վերադարձվել պարտատիրոջը։ Կտակում տվյալ կա այն մասին, որ Միքայել դուքսն ու Վասիլիոս մագիստրոսը նույնիսկ Բոյիլասին կյանքից զրկելու ցանկություն են ունեցել։ Այս տվյալները ուշագրավ են ու հետաքրքրական։ Նույնիսկ Բոյիլասի նման ազդեցիկ մի պաշտոնյա, որ ուներ պրոտոսպաթարիոսի և հյուպատոսի բարձր աստիճան, չէր կարողացել խուսափել տեղական իշխանությունների ոտնձգություններից ու հափշտակություններից[2]։ Դուքս Միքայելի և մագիստրոս Վասիլիոսի պայքարը բյուզանդական ֆեոդալ Բոյիլասի դեմ, մեր կարծիքով, սոսկ խոշոր ֆեոդալների միջև գոյություն ունեցող հակառակություն չէր, այլ ամենայն հավանականությամբ Բյուզանդիայի տիրապետության դեմ ուղղված պայքարի արտահայտություն։ Ճիշտ է, դուքս Միքայելն ու մագիստրոս Վասիլիոսը ի պաշտոնե ծառայում էին Բյուզանդիային, բայց ինչ խոսք, որ բյուզանդական տիրապետությունը իրենց երկրի համար օտարի լուծ էր։

Բոյիլասն իր կտակում հայտնում է, որ երբ նա հաստատվեց իրեն տրված կալվածքներում, դրանք գարշահոտ, անտանելի վայրեր էին, լինելով օձերի, կարիճների և վայրի գազանների բույն, որից սարսափահար մոտակայքում ապրող հայերը հանգիստ չունեին։

Նշված ժամանակաշրջանում Կղարջքին մերձակա բոլոր գավառներում — Հարքում, Ապահունիքում, Մանանաղում, Եկեղյաց գավառում, նույնիսկ Շիրակում լայն տարածված է եղել թոնդրակեցիների աղանդը, և, ըստ երևույթին, Կղարջքը բացառություն չի կազմել[3]։ Բոյիլասի կտակում նշված օձերի, կա-

[1] Georgius Cedrenus, t. II, p. 675—676։ Միքայել Ատտալիատեսը նրան համարում է հայ (Michaelis Attaliotae, Historia, p. 116)։ Ամենայն հավանականությամբ նա վրացադավան հայ էր։

[2] Տե՛ս Сборник документов по социально-экономической истории Византии, Москва, 1951, стр. 135.

[3] Գրիգոր Խանձթեցու (վախճանվել է 861 թվականին) վարքագրության մեջ կա հիշատակություն Կղարջքում, կոնկրետ Օպիզայում, աղանդավորների գոյության մասին։ Տե՛ս Георгий Мерчул, стр. 144—145. Նշված ժամանակաշրջանում աղանդավորներ են հիշվում նաև Անձյայում, որ գտնվում է Արտանուջից երկու ժամ հեռավորության վրա (նույն տեղում, էջ 136).

րիճների և վայրի գազանների տակ մեր կարծիքով ենթադրվում են թոնդրակեցի աղանդավորները։ Արիստակես Լաստիվերտցին թոնդրակեցի աղանդավորներին անվանում է «մարդադեմ գազանաց փարախ», Կունծիկ աբեղային՝ «վիշապ օձ կամակոր», Թոնդրակը՝ «գազանաց գառագիղ», իշխան Վրվերի ագարակը՝ «օձաբնակ տեղիք», իսկ աղանդավորների բնակատեղիները՝ «օձաբնակ որջք»։ Նման ածականներով են խոսում թոնդրակեցիների մասին նաև Գրիգոր Մագիստրոսը և միջնադարյան մյուս հեղինակները։ Ինչպես երևում է, Բոյիլասը հանգիստ չի ունեցել այդ աղանդավորներից։ Սաղմոսի բառերը մեջ բերելով նա ասում է, որ այդ անտանելի վայրը ինքը սրի ու հրի մատնեց։ Հակված ենք կարծելու, որ խոսքն այստեղ թոնդրակեցիներին և նրանց բնակատեղիների սրի ու հրի մատնելու մասին է։ Այս ենթադրությունը հաստատվում է Գրիգոր Մագիստրոսի վկայություններով, իրենից առաջ թոնդրակեցիների դեմ գործող իշխանավորների մասին։ Նա գրում է, որ «նախքան մեզ բազումք զօրավարք և պետք ի սուր սուսերի մատնեցին զնոսա»[1], այսինքն թոնդրակեցիներին։

Բոյիլասի կտակի հետ ծանոթանալով կարելի է գալ այն եզրակացության, որ կտակագիրը քաջ ծանոթ է եղել բյուզանդական օրենսդրությանը։ Կտակագիրը սկզբում տվյալներ է հաղորդում իր անձնավորության մասին, ապա հատուկ շեշտում է այն հանգամանքը, որ կտակը կազմել է ֆիզիկական ու մտավոր տեսակետից առողջ վիճակում, և որ այդ գործում նրան ոչ ոք չի խաբել կամ ստիպել։ Բացի դրանից նշում է, որ ինքը ուղղափառ քրիստոնյա է, տիեզերական յոթ ժողովների կանոններին համաձայն, և որ ինքը պետության դեմ ոչ մի հանցանք չի գործել։ Այդ բոլորը շարադրելուց հետո, նա կենսագրական տվյալներ է հաղորդում իր և իր ընտանիքի մասին, որից հետո խոսում է իրեն պատկանած 11 գյուղերի և կալվածների մասին, որոնցից 1059 թ. (կտակի գրության ժամանակ) իր տրամադրության տակ էին մնացել միայն չորսը, այն է Տանձուտ-Սալիմը, Բուզինան, Պարաբումինոնը և Խայսաը։ Նախկինում ունեցած իր գյուղերից Օփիգորունի, Կուններիան և Կալմուխին խլել էր թեմայի դուքս Միքայելը, իսկ Վարդա գյուղը՝ Միքայելի որդին, մագիստրոս Վասիլիոսը։ Բոյիլասն իր գյուղերից Ուզիկին կտակել է մեկին, որի անունը չի հիշատակում, իսկ Կոպտերիոնը և Խոսպակրատը կտակել է ինչ որ որբ եղբայրների՝ Քրիստափորին և Գեորգին ու նրանց հորեղբորորդուն։ Ինքը՝ Բոյիլասն ապրում էր Տանձուտ-Սալիմ կալվածքում, ուր նա կառուցել էր նաև սուրբ Աստվածածնի անունով մի վանք։ Ամենայն հավանականությամբ հենց այդ գյուղում էր գտնվում նաև սուրբ Վարվառայի վանքը, որտեղ թաղված էին Բոյիլասի մայրը, կինը, Ռոմանոս որդին և ուր Բոյիլասի խոսքերով պետք է թաղվեր իր մահից հետո նաև ինքը։ Այդ Տանձուտ կալվածքից է Բոյիլասն առանձնացրել չորս հողաբաժին ազատ արձակած իր ստրուկների ընտանիքների համար։ Տեղին է նշել, որ Բոյիլասը ազատ արձակած իր ստրուկներին տված այդ չորս հողաբաժինները անվանում է «ազատ, լրիվ ազատ» (ἐλεύθερα, παντελεύθερα)։ Ահա այդ Տանձուտ գյուղը, բացի վերևում հիշատակված չորս հողակտորներից, Բոյիլասը կտակում է իր անդրանիկ դստեր Իրինեին և նրա ամուսնուն՝

---

Վերջիններիս մասին Ն. Մառը ենթադրում է, որ պավլիկյաններ են եղել (Նույն տեղում, Առաջաբան, էջ XVIII, ծանոթ. 3)։

[1] Տե՛ս Գրիգոր Մագիստրոսի թղթերը, Ալեքսանդրապոլ, 1910, էջ 162։

սպաթարոկանդիդատ Գրիգորիոսին։ Տանձուտ գյուղի եկամուտը, ինչպես նաև իր այդ դստեր նվիրված «շարժական, ինքնաշարժ և դյուրաշարժ» ողջ գույքի արժեքը (սարուկներ, արծաթ, դիպակներ և անասունները) Բոյիլասի հաշվումներով կազմում է երեսուն լիտր ոսկի, որը և նա համարում է իր դստեր օժիտը։

Բոյիլասն իր մյուս դստեր՝ Մարիային թողնում է նույնպես երեսուն լիտր արժեքով ունեցվածք։ Այդ թվում՝ տասը լիտր արժեքով սարուկներ, արծաթ, դիպակներ և անասուններ։ Մնացած քսան լիտրի դիմաց նա Մարիային տալիս է իր Բուզինա կալվածքի կեսը։ Նույն կալվածքի մյուս կեսը Բոյիլասը թողնում է իր կողմից Տանձուտ գյուղում կառուցված սուրբ Աստվածածնի վանքի հոգևորականության տրամադրության տակ, պարտավորեցնելով նրան այդ կես գյուղի տարեկան եկամտից վճարել միաբաններին որպես ռոճիկ քսանվեց դահեկան, վանքի կարիքների համար տասներկու դահեկան և սուրբ Վարվառայի վանքի կարիքների համար՝ ևս տասներկու դահեկան։ Ինչպես տեսնում ենք, Բուզինա գյուղի կեսի եկամուտը ըստ երևույթին հիսուն դահեկան էր, հետևապես ամբողջ գյուղի տարեկան եկամուտը մոտավորապես հարյուր դահեկան, քսան դահեկանով ավելի, քան Տանձուտ գյուղի եկամուտը։

Ըստ երևույթին, այդ հիսուն դահեկանը, որ Բոյիլասը կտակում է երկու վանքերի ու նրանց հոգևորականության կարիքները հոգալու համար, լրիվ չէին ծածկելու նրանց ծախսը, դրա համար էլ Բոյիլասը իր երկրորդ՝ Պարաքանի գյուղից նրանց կտակում է երկուհարյուր մոդ հացահատիկ, հազար լիտր գինի և այլ ընդեղեններ ու պտուղներ։ Իրեն պատկանող չորրորդ գյուղը (Եսայաար) Բոյիլասը կտակում է իր փեսա Միքայելին՝ հինգ լիտր ոսկու դիմաց, այլ խոսքով՝ այդ կալվածքը նա վաճառել է։

Այս բոլորից բացի, Բոյիլասը բազմաթիվ եկեղեցական սպասներ և զանազան գրքեր իր կտակի համաձայն թողնում է իր կողմից կառուցված սուրբ Աստվածածնի վանքին, այն պայմանով, որ իր ժառանգները իրավունք ունենան օգտվելու դրանցից։ Սակայն Բոյիլասը այդ սպասեղենի և գրքերի կապակցությամբ ուրիշ պայման էլ է դնում իր ժառանգների առաջ. նրանք իրավունք չպետք է ունենային դրանք ուրիշին տալու կամ վաճառելու։ Եթե նրա դստերից որևէ մեկը կառուցեր նոր մի վանք, այդ դեպքում միայն այդ սպասեղենը և գրքերը կարող են բաժանվել նրանց միջև։

Բոյիլասի կտակում կա ուշագրավ մի այլ կետ ևս։ Եթե իր ժառանգները՝ դստրերն ու փեսաները անխախտ կերպով կատարեն իր բոլոր հանձնարարությունները, ապա նրանք իրավունք պետք է ունենային տիրելու իրենց կտակված կալվածքներին, հակառակ դեպքում՝ Բուզինա գյուղն ամբողջությամբ թողնում է սուրբ Աստվածածնի վանքի հոգևորականներին, նույն այդ և սուրբ Վարվառայի վանքերի ծախսերը հոգալու համար։

Բոյիլասի կտակում ամենահետաքրքրականը նրա տրամադրության տակ եղած սարուկների հիշատակության փաստն է։ Հայագետներն ու բյուզանդագետները կասկած չեն հայտնել Հայաստանում և Բյուզանդիայում միջին դարերում սարուկների գոյության հարցի մասին, միանգամայն ճիշտ նշելով, որ ստրկությունը տվյալ ժամանակաշրջանում տնտեսության մեջ երկրորդական դեր էր խաղում[1]։

[1] Այդ մասին տե՛ս Հ. Մ ա ն ա ն դ յ ա ն, Ֆեոդալիզմը հին Հայաստանում, Երևան, 1934,

Բոյիլասն ունեցել է երկու տեսակի ստրուկներ՝ ընդոծին (οἰκογενεῖς) ստրուկներ, որոնք ծնվել են իր աղախիններից և արծաթագին (ὠνητοί) ստրուկներ։ Կտակից կարելի է հետևցնել, որ Կիրակոս անունով իր ստրուկին նա բերել է իր հետ Կապադովկիայից, որովհետև այդ ստրուկը, ըստ կտակի, մեծացել է Բոյիլասի հետ և նրա ճանապարհորդությունների ընթացքում՝ շատ չարչարվել։ Սակայն կտակում թվարկված ստրուկների մի մասի անունները հնարավորություն են տալիս եզրակացնելու, որ նրանք ձեռք են բերվել տեղում։ Աբասգոս, Սիլիգնու, Մուսեն, Ղարիպ, Ապոսֆարես անունները կրող մարդիկ դժվար թե հույներ լինեին։

Բոյիլասն անուններով է հիշատակում այն ստրուկներին միայն, որոնց նա ազատություն է շնորհել։ Նրանք կազմում են տասներեք ընտանիք։ Սրանց նա տալիս է որոշ քանակությամբ դրամ, մի քանիսին էլ փոքր հողակտորներ և աշխատող անասուններ։ Բայց այն ստրուկներին, որոնց նա չի ազատում, այլ կտակում է, ավելի ճիշտ, նախքան կտակ կազմելը նվիրում է իր ժառանգներին, նա անվանապես չի հիշատակում և չի խոսում նրանց թվի մասին։

Հետաքրքրական է պարզել, թե ինչով էին զբաղված Բոյիլասի ստրուկները։ Մեծ հավանականությամբ նրանք նախ և առաջ տնային ծառայություն են կատարել։ Ստրուկներից մեկը, Գրիգորիս անունով, զբաղվել է գրագրությամբ, ձեռագրերի արտագրությամբ, գրչի գործերով։ Մյուս ստրուկների զբաղմունքի մասին կտակում տվյալներ չկան։

Գ. Օստրոգորսկին Պատմոս կղզու վերաբերյալ 1073 թվականին գրված մի փաստաթղթի հիման վրա, ուր ասված է, թե գյուղատնտեսության մեջ աշխատող ստրուկներ այլևս չկան Վարիս կոչվող կալվածքում, որովհետև բոլորը մահացել են, գալիս է այն եզրակացության, որ 11-րդ դարի երկրորդ կեսում արդեն ստրկական աշխատանքը գյուղատնտեսության մեջ չի կիրառվել[1]։

Սակայն Վարիս կալվածքի դեպքը չի կարելի ամբողջ Բյուզանդիայի վրա տարածել, մանավանդ Բյուզանդիայի արևելյան շրջանների վրա, որոնք համեմատաբար ավելի հետամնաց վիճակում էին գտնվում։ Այնպես որ բացա-

Խ. Սամուելյան, Ստրկությունը հին Հայաստանում, ՀՍԽՀ Պատմության և Գրականության Ինստիտուտի «Տեղեկագիր», Գիրք Բ, 1937 թ.։ Նույնի, Հին հայ իրավունքի պատմություն, Երևան, 1939 թ.։ Ս. Հակոբյան, Ստրկությունը և ստրկատիրական հասարակական ֆորմացիան հին Հայաստանում, ՀՍՍՌ ԳԱ «Տեղեկագիր», № 8, 1948 թ.։ Նույնի, Հայ գյուղացիության պատմություն, Գիրք առաջին, Երևան, 1957 թ.։ Ս. Պողոսյան, Գյուղացիների ճորտացումը և գյուղացիական շարժումները Հայաստանում 9—13-րդ դարերում, Երևան, 1956։ Բ. Առաքելյան, Հայաստանի միջնադարյան քաղաքների բնակչության սոցիալական կազմը, «Պատմա-բանասիրական հանդես» № 2, 1958 թ.։ Е. Э. Липшиц, Византийское крестьянство и славянская колонизация, «Византийский Сборник», Москва—Ленинград, 1945; Նույնի, Восстание Фомы Славянина и византийское крестьянство на грани VIII—IX вв., «Вестник Древней Истории», № 1, 1939; Н. В. Пигулевская, К вопросу об общественных отношениях на Ближнем Востоке, Ленинград, 1948; А. П. Каждан, Рабы и мистии в Византии в IX—X вв., Ученые Записки Тульского педагогического Института, вып. 2, 1951, М. Я. Сюзюмов, О правовом положении рабов в Византии, Ученые Записки Свердловского гос. педагогического института, вып. 11, 1955; Р. Браунинг, Рабство в Византийской Империи (600—1200), Византийский Временник, т. XIV, 1958; A. Hadjinikolau-Marava, Recherches sur la vie des esclaves dans le monde Byzantin, Athénes, 1950.

[1] Տե՛ս Г. А. Острогорский, Византийские писцовые книги, Byzantinoslavica, t. IX, fasc. 2 (1948), p. 239.

ված չէ, որ Բոյիլասի ստրուկները աշխատել են նաև գյուղատնտեսության մեջ։

Բոյիլասի կալվածքների վրա, ամենայն հավանականությամբ, աշխատել են նաև հողազուրկ գյուղացիներ, որոնք այդ ֆեոդալից հող էին վարձակալում։ Բոյիլասն իր կտակում հիշատակում է մարդկանց, որոնց նա անվանում է τῶν ἔξω այսինքն «դրսի մարդիկ»։ Սրանք ըստ երևույթին այն գյուղացիներն էին, որոնք թեև անձնապես կախված չէին իրենից, բայց կախված էին տնտեսապես, մարդիկ, որոնք բյուզանդական աղբյուրներում կոչվում են միսթիոններ[1] վարձակալներ, իսկ հայկական սկզբնաղբյուրներում՝ «վարձուոր մշակք» կամ «վարձկանք»։ Որ Բոյիլասը վարձակալման է տվել իր հողերի մի մասը, այդ հաստատվում է նաև այն փաստով, որ նա Տանձուտ գյուղից ստացել է տարեկան ութսուն դահեկան պախտ (πάχτον), որը ոչ այլ ինչ է, քան վարձակալման (արենդի) վճարը։

Ինչպես ցույց են տվել Բյուզանդիայի սոցիալ-տնտեսական հարաբերությունների պատմությամբ զբաղված մասնագետները, բյուզանդական ֆեոդալական տնտեսության բնորոշ գծերից մեկն էլ այն է, որ հողային ռենտան գլխավորապես դրամական է եղել։ Դրամական միավորներով էին հաշվվում նաև եկամուտները[2]։ Բոյիլասի կտակի մեջ էլ մենք նույն բանն ենք տեսնում, մի հանգամանք, որ ցույց է տալիս, թե Բյուզանդիայի համար այդ բնորոշ երևույթը գոյություն ուներ նաև Բյուզանդիայի կողմից գրավված հայ-վրացական շրջաններում։

Բոյիլասի կտակը հաստատում է բյուզանդական կյանքի մի այլ կողմը ևս։ Տվյալ ժամանակաշրջանի համար բնորոշ է այն փաստը, որ ստրկատեր ֆեոդալները ազատ են արձակում իրենց ստրուկներին։ Բոյիլասի կտակում գրված է, որ նա ազատություն է շնորհում իր ստրուկներից տասներեք ընտանիք։ Բյուզանդագետ Մ. Սյուզյումովի կարծիքով ազատ արձակված ստրուկը դառնում էր լիիրավ, բոլորովին ազատ. իր այս ենթադրությունը նա հնարավոր է համարում հիմնավորել նաև Բոյիլասի կտակը վկայակոչելով[3]։ Մի ուրիշ բյուզանդագետ՝ Ա. Կաժդանը գալիս է այն եզրակացության, որ ազատ արձակված ստրուկները դառնում էին կախյալ վարձակալներ[4]։ Սույն կտակի տվյալների հիման վրա գալիս ենք այն եզրակացության, որ Բոյիլասը, չնայած խոսքով հայտարարում է իր ստրուկներին լիակատար ազատություն շնորհելու մասին, բայց այնուամենայնիվ, ստրկի և ազատություն ստացած ստրկի միջև մեծ տարբերություն չի եղել։ Ազատված ստրկի հետ տերը նույնպես շարունակում էր վարվել իր ցանկության համաձայն։ Բոյիլասը ասում է իր աղախին Սիլիգնուի մասին, որ նրան ազատ է արձակել, բայց միաժամանակ գրում է, որ նույն այդ աղախնուն տալիս է իր դուստր Մարիային, որպեսզի նրան ծա-

---

[1] Միսթիոնների մասին տե՛ս Е. Э. Липшиц, Византийское крестьянство и славянская колонизация, «Византийский Сборник», Москва—Ленинград, 1945, стр. 126 и сл.; А. П. Каждан, Рабы и мистии в Византии в IX—X вв., Ученые Записки Тульского педагогического института, вып. 2, 1951.

[2] Տե՛ս Г. А. Острогорский, Византийские писцовые книги, Byzantinoslavica, t. IX, 2, 1948, p. 295—296.

[3] М. Я. Сюзюмов, О правовом положении рабов в Византии, Ученые Записки Свердловского гос. педагогического института, 1955, вып. 11, стр. 186.

[4] А. П. Каждан, Рабы и мистии в Византии в IX—X вв., Ученые Записки Тульского педагогического института, 1951, вып. 2, стр. 77.

*ռայի (բառացի՝ ստրկություն անի՝ ἐκδουλεύειν) հինգ տարի ևս։ Ազատ արձակված ստրուկների այդպիսի դրության մասին վկայում են նաև բյուզանդական օրենսգրքերը։ Այնպես որ ազատված ստրուկների լիակատար ազատության ու լիիրավության մասին չի կարող խոսք լինել։ Ա. Կաժդանի ենթադրությունը այն մասին, որ ազատ արձակված ստրուկները դառնում էին միսթիոններ, այսինքն վարձակալներ, ֆեոդալից արենդով հող վերցնողներ, շատ հավանական է։*

*Վերջացնելով իր կտակը, Բոյիլասը նրա ճշգրիտ կատարման համար նշանակում է հոգաբարձուներ և խնամակալներ. դրանք էին բազմիցս հիշատակված մագիստրոս Վասիլիոսը, նրա եղբայրը վեստարխոս Ցարեսմանեսը, Թեմի եպիսկոպոսը, Բոյիլասի երկու փեսաները՝ սպաթարոկանդիդատ Գրիգորիոսը և մերարխոս Միքայելը և վերջապես սուրբ Աստվածածնի վանքի ավագ քահանան։*

*Կտակը ավարտվում է ցուցմունքով այն մասին, որ գրված է Թեոդուլոս վանականի ձեռքով, աշխարհի արարչագործության 6567 թվականին, ապրիլ ամսին, որ համապատասխանում է մեր թվարկության 1059 թվականին, և որ նրա տակ ստորագրել են բոլոր վկաները։ Կտակի վերջում սակայն մեզ հասել է միայն Եվստաթիոս Բոյիլասի ստորագրությունը։*



*Եվստաթիոս Բոյիլասի կտակի հայերեն թարգմանությունը կատարել ենք Բենեշևիչի հրատարակած բնագրի հիման վրա, որոշ աննշան ուղղումներով, որոնց մասին առանձին առանձին խոսվում է ծանոթագրությունների մեջ։ Ձեռքի տակ ենք ունեցել նաև ձեռագրի միկրոժապավենը, որը Լենինգրադի Սալտիկով-Շչեդրինի անվան Հանրային գրադարանի հունարեն ձեռագրերի բաժնի վարիչ Ե. Է. Գրանստրեմի սիրալիր օգնությամբ ստացանք Փարիզի Ազգային Մատենադարանից։ Ծանոթագրությունները կազմված են այն հաշվով, որպեսզի ոչ միայն բացատրեն կտակի մութ կետերը, այլ որոշ չափով բացահայտեն սոցիալ-տնտեսական հարաբերությունները Բյուզանդիայի տիրապետության տակ ընկած հայ-վրացական շրջաններում կտակի գրության ժամանակաշրջանում։*

## ԵՎՍՏԱԹԻՈՍ ԲՈՅԻԼԱՍԻ ԿՏԱԿԸ

*Քանի ժամանակն է, ես ցանկացա հստակ և արթուն մտքով, հանդարտ ու կատարյալ կերպով կարգի բերել իմ գործերը, որովհետև ավա հիշողությամբ հնարավոր չէ ոչինչ անել։*

*Ես ոչ մի կերպ չեմ կարող պատմել, թե ինչքան վիշտ պատճառեցին ինձ խառնակ ժամանակները։ Ես անչափ տանջվել եմ դժբախտություններից, ինձ ամեն կողմից անդադար հարվածել են կոհակները, ինչպես նավաբեկյալին, մինչև որ ես գաղթական դարձա իմ ծնված երկրից՝ պանդուխտ, հայրենիքի սահմաններից հեռու[1], կտրելով շաքաթ ու կեսվա ճանապարհ։ Հաստատվելով այլ հավատք պաշտող և ուրիշ լեզվով խոսող ժողովուրդների մեջ, ես արժանացա պայծառափայլ և հռչակավոր դուքս Միքայելի մեծ պաշտպանությանը. որի հրամանների տակ ես տասնհինգ տարի ծառայեցի պետությանը, իսկ այ-*

նուհետև, երբ ես ութ տարի էր, որ հեռացել էի ծառայությունից, նա իր հոգին առաքինի կերպով ավանդեց, իսկ նրա պայծառափայլ որդին մեծափառ մագիստրոսը, ամեն կերպ գնահատելով իմ ծառայությունները և ամենից առաջ ազատությունը, ինձ օժանդակեց մեծ բարերարություններով։ Բայց մեր հոգու վրա կախված ծանրությունը մենք ի վիճակի չենք իմանալու, դրա համար ես վաղուց դիմել եմ ապաշխարության, ելակետ ունենալով ինձ մնացած կյանքը, և ամեն ինչ գցելով ամենատես դատաստանին, իմ խոսքի սկզբում և վերջում (սուրբ) երրորդությունն եմ վկայակոչում։

Հանուն հոր և որդվո և հոգվույն սրբո (ես) Եվստաթիոս խրխաորիկլինիպրոտոսպաթարիոս[3] և հյուպատոս[4] ներկա գրավոր և ստորագիր դաղտնի կտակը անում եմ, կազմում ու թողնում իմ սեփական մտադրությամբ, անբռնադատ կամքով։ Այդ գործում ինձ ոչ ոք չի պարտադրել, չի ստիպել, չի հեգնել, չի խաբել, չի նենգել, այլ ես կատարում եմ գործի իմացությամբ, առանց խաբեության ու կեղծիքի, ընդհակառակը լիակատար ցանկությամբ ու ամբողջ հոգով, հստակ ու առողջ մտքով ու քաջառողջությամբ, ողջամտորեն, ունենալով իմ բոլոր մտավոր զգայարանները կարգին վիճակում[5]։

Սկզբից ես ի վերուստ բախտն ունեցա ազատ ծնվելու և բնությամբ առողջ։ Ես ուղղափառ եմ և լրիվ համաձայն յոթ սուրբ և տիեզերական ժողովների որոշումներին և սահմանումներին։ Մինչև օրս պետության հանդեպ ոչ մի հանցանք չեմ գործել, որն ինձ պատասխանատու աներ որևէ բանում։ Մինչև այսօր մարդասերի անսահման հոգատարության շնորհիվ, թագավորական՝ աստվածային բազկի շնորհիվ և վերևում հիշատակած իմ տիրոջ և տիրակալի՝ դուքսի անչափ բարիքների ու բարեգործությունների շնորհիվ ես ունեցել եմ ազատ և անկաշկանդ կյանք և (հուսով եմ), որ նրանից հետո նրա որդի պայծառափայլ մագիստրոս և ժառանգորդ տեր Վասիլիոսը նույնպես (այդպիսի) վերաբերմունք կցուցաբերի իմ հանդեպ։

Ես գաղթեցի այս երկիրը իմ հայրենիքից, իմ օրինավոր կնոջ, ողորմած Աննայի հետ ամուսնանալուց հետո։ Ես ինձ հետ ունեի իմ հավաքած բոլոր փողերը, որոնց ավելացան նաև իմ արդար վաստակով ձեռք բերվածը։ Ինձ շնորհվեցին երկու դուստր և մեկ որդի։ Իմ որդին լրացնելով իր կյանքի երրորդ տարին վախճանվեց ինդիկտիոնի վեցերորդ տարում[6], իսկ ինդիկտիոնի իններորդ տարվա[7] սկզբին նրա մայրը և իմ կենակիցը, կրոնավորյալ, աստծու նախախնամությամբ հետևեց որդուն, ամբողջ կյանքս երկու դուստրերի հետ գցելով անչափ տխրության մեջ[8]։ Նրանց մասին ես հոգում էի մինչև ընթացիկ ինդիկտիոնի տասներկուերորդ տարին[9], ինչքան որ հնարավորություն էր տալիս աստծու անճառ կամքը։ Բայց մահվան միտքը ինձ անընդհատ տանջում է։ Աչքի առաջ ունենալով տարաժամ և անակնկալ (մահը) ես կամեցա կարգի բերել իմ գործերը։ Նախ և առաջ ես ավելի վեհ ու ավելի կարևոր հոգսով էի մտահոգված, այն է որպեսզի աստված հիշվի, որպեսզի հոգին աստվածային ներշնչմամբ նմանվի նախատիպի կերպարին, իսկ մարմինը շեղվի ցանկությունների ուղուց։ Ես նկատի ունեմ եկեղեցին, այն է աստծու և աստվածամոր տաճարը։

Իմ այս գաղթականության սկզբում, երբ ես այստեղ ժամանեցի և բնակվեցի, այս վայրը, որ ես ստացա, գարշահոտ էր, անտանելի, դա օձերի, կարիճների և վայրի գազանների բույն էր, ինչ որ բոլորովին հանգիստ չէր տա-

չիս դիմացն ապրող հայերին, որոնք սարսափահար էին եղել[10]։ Այդ վայրը շատերի համար անանցանելի էր և (այդ պատճառով) շատերը չգիտեին, թե ինչ է այնտեղ կատարվում[11]։ Դրա համար ես, սաղմոսի ասածի նման[12], սրով ու հրով այն մոխրի վերածեցի, իսկ այնուհետև այնտեղ կառուցեցի բնակարան և սուրբ վանք ի հիմանց, կարգի բերեցի արոտավայրերը, [տնկեցի] անտառներ, այգիներ, պարտեզներ, [անց կացրի] առուներ, [կարգի բերեցի] ագարակներ, [կառուցեցի] ջրաղացներ և ինչ որ[13] պիտանի էր և անհրաժեշտ։ Բացի դրանից, կարգի բերեցի իմ Բուզինա[14] կալվածքը[15], որը մինչ այդ կատարյալ ամայի էր, ես դժվարությամբ մշակեցի, ինչպես նաև Եսայաս գյուղը[16], որն անապատ էր և աղքատ, բացի Ջալիմա անապատից։ Ուզիկի գյուղը և Խուսպակրատը[17], Կոպտերիոն գյուղը, Օփիդորունի գյուղը և Կուսներիան, որոնք վաղուց անապատ էին և անբնակելի[18], ես մեծ ծախսերով կարողացա կարգի բերել։ Ուզիկի գյուղը ես տվեցի նրանց, որոնց ժառանգ համարեցի, դրա հետ մեկտեղ տալով գործարքը հաստատող վկայականը։ Իսկ Կոպտերիոն գյուղը և Խուսպակրատը տվեցի հարազատ եղբայրներ որբեր Խրիստոփորոսին ու Գեորգիոսին և նրանց աղքատ ու որբ հորեղբորորդուն։ Իսկ Օփիդորունի գյուղը և Կուսներիան Կալմուխիի հետ միասին ես տվեցի իմ հանգուցյալ դուքսին ու տիրոջը, վերջինիս խնդրանքով, օգտագործման համար, գրավոր պայմանագրի հիման վրա։ Իսկ Վարդա պրոաստիոնը[19] առանց որևէ բարենորոգության, ինչպես որ այն ստացել էի, տվեցի պայծառափայլ մագիստրոս տեր Վասիլիոսին, նրա կողմից պարտադրվելով այն վաճառել [իրեն], նրա արժեքի դիմաց ոչինչ չստանալով, այլ միայն պարտքով, որի մասին, ինչպես նաև նրա այլ պարտքերի մասին, քսանհինգ լիտր[20] ընդհանուր գումարով [ունեմ] գրավոր ստացականներ պայծառափայլ մագիստրոսից, հանգուցյալ դուքսից և հանգուցյալ դքսուհուց՝ իմ տերերից։ Այդ բոլորի դիմաց ես նրանցից ոչինչ չեմ ստացել։ Այդ մասին թող միջնորդի և դատի Աստծու ամենահաս նախախնամությունը։ Սրտագետ Աստվածը վկա, ես մինչև այժմ ոչ մի նենգություն կամ չարամտություն չեմ ցուցաբերել ոչ նրա (իմա՛ դուքսի — Հ. Բ.) հանդեպ, ոչ էլ նրա որդիների՝ իմ տիրոջ որդիների հանդեպ։ Ես ոչ մի ստորություն չեմ արել նրանց հանդեպ, ոչ մտածել եմ, ոչ էլ գրել [նրա դեմ] որևէ զրպարտություն, այլ առանց դավի և կամավոր կերպով մինչև իմ մահը ես նրանց համար տագնապների մեջ եմ ընկել, կատարելով մեծ ու անհուսալի գործեր, ամենազոր Աստծու շնորհիվ, անհաղթ խաչի օգնությամբ և իմ Աստվածածնի միջնորդությամբ, չնայած դրան, որ ես նրանց կողմից և նրանց միջոցով շատ ու շատ դժվարությունների և վտանգների հանդիպեցի։ Նրանք նույնիսկ իմ կյանքը դավեցին։ Բայց ստանալով [Աստծու] ամենատես աչքի օգնությունը ես այդ բանում ինձ բոլորովին չկորցրեցի։

Ինձ մնացած չորս կալվածներից և պրոաստիոններից Տանձուտը, նույն ինքը Սալիմը, լեռնային հողերով, որը բաժանում է ինձ պատկանող ջրաբեր հողերը անջրդիններից, այսինքն այդ պրոաստիոնի ամբողջ պախտը[21] ութսուն դահեկանը[22] և էննոմիոնը[23], ի բաց առյալ այն չորս զևգարատիոնները[24], որոնք ես շնորհել եմ որպես կտակ և լեգատ[25] իմ կողմից ազատ արձակված ստրուկներին[26], ես տվեցի որպես օժիտ իմ առաջին և հարազատ դստեր Իրինեին և նրա կողակցին։ Ահա այդ ութսուն դահեկանին, արոտատեղիներին և ամբողջ [նշված պրոաստիոնի] հողերին թող տիրի իմ այդ նույն դուստրը, դա իր հայ-

րենական ժառանգությունն է և իր օժիտը երեսուն լիտրի արժողությամբ[27]։ Այդ բոլորի հետ նա նախապես ստացավ նաև շարժական, ինքնաշարժ և դյուրաշարժ[28] գույք, մի մասը գաղտնի կերպով, մյուսը բացահայտ, այն է՝ սարուկներ, արծաթ, դիպակներ և անասուններ[29]։ Թող նա այդ բոլորն ունենա իմ օրհնությամբ և կամքով, թող նա ապրի իմ տան մեջ բարեպաշտությամբ և ուղղափառորեն քաղաքավարելով, վճարելով եկեղեցական[30] և թագավորական հարկերը, ինչպես որ սահմանված է։

Նրա հարազատ քրոջ և իմ իսկական դուստր Մարիամին ես տվեցի որպես օժիտ տաս լիտր [արժողությամբ] շարժական, ինքնաշարժ և դյուրաշարժ գույք, այն է՝ սարուկներ, արծաթ, դիպակներ և անասուններ։ Ցանկանալով, որ այդ [օժիտը] լրացնեմ ու հասցնեմ նրա քրոջ օժիտի՝ երեսուն լիտրի չափին, որը [միաժամանակ] նրա ժառանգությունն է, ես նրան տվեցի իմ Բուզինա կալվածքի կեսը։ Այդ երկուսի գումարը կազմում է երեսուն լիտր օժիտ և հայրենական ժառանգություն։ Այդ նույն իմ կալվածքի մյուս կեսը ես թողնում եմ իմ Աստվածածնի վանքին, որը ես ի հիմանց կառուցեցի, որպեսզի նրան ծառայող միաբանները լիակատար և անվերադարձ կերպով տիրեն նրան, որպես իմ հոգատարության արտահայտություն։ Քահանաներին և սարկավագներին որպես ռոճիկ թող վճարվի քսանվեց [դահեկան], վանքի ջահընկալության[31] համար տասներկու [դահեկան]։ Սուրբ վկա Վարվառայի վանքին, որը միաժամանակ հանդիսանում է իմ հարազատ մոր, որդուս Ռոմանոսի և իմ կողակցի հանգստարանը, որը դառնալու է նաև իմ թշվառիս ու անարժանիս [հանգստարանը], թողեցի վանքի պաշտոնավարության, հոգեհանգիստների, ինչպես նաև թաղումների համար տասներկու [դահեկան]։ Բացի դրանից, իմ Պարարունի[32] գյուղից երկու հարյուր մոդ[33] ցորեն, հազար լիտր[34] գինի, ընդեղեններ և պտուղներ[35] աստծու տնօրինությամբ։ Իսկ Եսայաս գյուղը հինգ լիտր [ոսկու] դիմաց տվեցի իմ փեսա Միքայելին։

Եթե աստծու շնորհիվ և իմ աստվածածնի միջնորդությամբ իմ երկու դուստրերը և փեսաները միմյանց հետ համերաշխ, խաղաղությամբ և սիրով ապրեն և [բոլորը] բնակվեն իմ բնակարանում, որը [գտնվում է] աստվածածնի [վանքի] դիմաց, ապա թող նրանք ունենան նաև իմ ամբողջ կայքը՝ շարժական, ինքնաշարժ և անշարժ ունեցվածքը, ինչպես սարուկներին, որոնք նախօրոք նվիրաբերվել են, այնպես էլ անշունչ գույքը, որ նրանք ստացել են, այնպես որ պարզ է յուրաքանչյուրի բաժինը։

Ես ոչ ոքի ոչ մի դրամ պարտական չեմ մնացել, բարերար աստվածը ծախսվածի համեմատ էլ տալիս էր։ Նույնպես ես ոչ մի ուրիշ մարդու չեմ թողել ոչ մի դահեկան, ոչ էլ զանազան առարկաներ, բացի սուրբ ու սրբազան սպասներից, որոնք վաղուց նվիրաբերել եմ իմ կողմից կառուցված ամենասուրբ վանքին, այն է՝ պատվական ոսկեղեն խաչը, որն ունի [սրբերի] կիտվածանկար[36] պատկերներ և վեց հատ ակներ։ Մեկ ուրիշ թափորի խաչ, արծաթապատ, որն ունի բարձրաքանդակ [պատկերներ], մի փոքր արծաթյա խաչ։ Սրբազան անոթներ՝ սկիհ, բաժակ, աստերիսկոս[37], հաղորդության երկու գդալ, մաղզմա, մի այլ խորը [մաղզմա], բուրվառ, բոլորն էլ արծաթյա, ոսկեջրած։ Կախվող կանթեղներ։ Այս բոլորի արժողությունն է երեք հարյուր [դահեկան]։ Մի ուրիշ սկիհ փայտյա իր ոտքով, այն է մետաքսյա կարմիր ղենջակ և սկիհների քողեր՝ վեց հատ։ Երեք անարող[38], պարսկական կանաչով սպիտակ դրոշ,

զոհամատուցման բաժակ[39]: Քահանայի հինգ սքեմ և փիլոններ՝ երկու սև փիլոն, չորս սպիտակ փիլոն, մեկ կարմիր, որը թաքցրել է Նիկոլան, ընդամենը յոթ փիլոն իրենց ուրարներով և փորուրարներով: Երկու հատ եմիփորոն, ամբողջությամբ մետաքսից, չորս մեծ ղենջակ, սուրբ սեղանի ծածկոց թանկագին կտորից[40], որի վրա ասեղնագործված են խաչեր և տառեր: Մի ուրիշը մանիշակագույն մետաքսյա, ապա կարմիրը և սպիտակը: Արծաթյա ոսկեջրած ուրիշ սպասեղեն — արծաթե կանթեղ, սուրբ մասանց տուփեր լի մասունքներով: Ութ հատ ոսկով նկարված մոմաներկ սրբապատկերներ, այն է խաչելության երկփեղկ պատկերը, սուրբ Գևորգի վահանաձև պատկերը, սուրբ Թեոդորոսը սուրբ Գևորգի հետ, աստվածածնի մի փոքր պատկեր, սուրբ Բարսեղի [պատկերը], աստվածածնի երկու մեծ պատկերներ, խաչելության վահանաձև պատկերը, ընդամենը ութ հատ: Տասներկու հատ արույրե ուրիշ սրբապատկերներ: Ոսկով նկարված հյուլոգրաֆիական[41] երեսուն այլ սրբապատկերներ, որոնք [պատկերում են] տերունական և զանազան սրբերի տոներ: Տարբեր սրբերի տաս հատ փոքր [պատկերներ], որոնցից ութ հատը ծածկվող տեսակից, իսկ երկուսը տարբեր: Երկու հատ պղնձե և հինգ հատ երկաթե մոմակալներ: Մեկ փոքր ջահ, երկու ութլուսյա աշտանակ, բազմաթիվ կանթեղներով վեց ջահ, իրենց շղթաներով, չորս հատ խնկաման, երկու հատ խնկանոց:

Զանազան գրքեր: Իմ թանկագին, ավելի ճիշտ անգին գանձը՝ սուրբ և սրբազան Ավետարանը, որն ամբողջությամբ ոսկով է գրված և ունի չորս ավետարանիչների ոսկով նկարված պատկերները և ունի կիտվածանկար զարդեր: Այն կազմված է մանիշակագույն կտորով, որի վրա ոսկե և արծաթե թելերով հյուսված են վեց[42] զարդանկարներ, կա ճարմանդ: Բացի դրանից տառերը նկարազարդ են, պատկերված է նաև ծննդի սուրբ տոնը: Նրա վրա կան ութսուն ինն ոսկե զամեր[43]: Մեկ ուրիշ մագաղաթյա ավետարան: Մեկ փոքր քառավետարան հասարակ գիրք: Մեկ ուրիշ [գիրք], որը [բովանդակում է] չորս ավետարանների մեկնությունները: Ճանապարհի մի փոքր գիրք Գործք առաքելոցը, մեկ ուրիշ մեծ չափսի [Գործք առաքելոց], որը բովանդակում է նաև Լիմոնարիոնը[44]: Ծննդոց գիրքը և մարգարեությունները: Մեկ ուրիշ...[45] գիրք Հնգամատյանը և Թագավորության երկու գրքերը: Պանդեկտեսը[46]: Մեկ տոնացույց: Երեք կոնդակարներ[47]: Մեկ մեծ գիրք, որը բովանդակում է [Ան]տիպայի երկու ճառերը և նրա վարքը[48]: Մեկ ուրիշ գիրք Դամասկացին[49], որը բովանդակում է նաև Աստվածաբանի երգերը[50]: Մեկ ուրիշ գիրք Մելիսան[51], Ապա Պանարիոնը[52]: Մեկ սաղմոսարան իր մեկնաբանությամբ: Մեկ տաղարան և երկու հագներգություն: Մետաֆրաստական չորս գիրք[53]: Երկու հայսմավուրք, որոնք բովանդակում են նաև տարբեր ընթերցանություններ: Մեկ ճառընտիր և մեկ ուրիշը, որ բովանդակում է տարբեր ճառեր: Մեկ ուրիշ գիրք, որ բովանդակում է Պարսկականները[54] և այլ տարբեր բաներ: Մեկ ուրիշ [գիրք]՝ Արխիատրատեգի[55] [վարքը]: Ոսկեբերանի բարոյախոսությունները, երեք գիրք: Սուրբ Բարսեղի վեցօրյա արարչագործությունը[56] և Ոսկեբերանի տետրակները: Մեծ Բարսեղի հակաճառությունները, տասնվեց տետրակ: Մեկնիչները: Քաղկեդոնի ժողովի գործերը[57]: Հոդեգոսը[58]: Մեկ կանոն շաբակնոց: Մեկ ուրիշ կանոն շարակնոց, որն ունի նաև հին և նոր կտակարանները համառոտ կերպով: Օրինաց [գիրքը]: Աղեքսանդրը[59]: Լևկիպեն[60]: Երա-

պահան: Տասներկու հայրապետաց գիրքը[61]: Եզովպոսը[62]: Պիսիդեսը[63]: Մալեինոսը[64]: Նիֆոնը[65]: Փիլոնը[66]: Երկու Սանդուխք [աստուածային ելից][67]: Երկու ժամանակագիրներ: Էպանիկտիրին[68], քերականության հարցեր, մեկ ուրիշ [գիրք] հարանց վարքը, երկու գիրք նախերգանաց հագներգության, Հնգամատյանը, հինգ ութ ձայնից շարակնոց, երկու տաղարան: Երեք ձայնից շարակնոց: Վեց հայսմավուրք, Ոսկեբերանի տարբեր գործեր: Մեկ ուրիշը, որն ունի հարցեր և սուրբ Իսիդոր Պելուսիոտեսի թղթերը[69]: Կոնք և դույլ և [սուրբ] սեղանի ծածկոց:

Ահա սրանք նվիրաբերվել են սուրբ վանքին այն պայմանով, որ նրանցից օգտվեն և նրանց վրա տիրեն իմ երկու դուստրերը, սաղմոսելու, կարդալու և պարապելու համար, բայց ոչ մի դեպքում չտան ուրիշ մարդկանց, այլ միայն [իրենք] օգտվեն նրանցից, ինչպես որ պետք լինի, երբ որ պետք լինի և որտեղ որ պետք լինի, միաբանների կամքով և համաձայնությամբ: [Նրանց եմ թողնում] նաև իմ չորս կալվածների տնօրինությունը, եթե պետք եղածին պես կատարեն իմ կողմից սահմանվածը: Այդ մասին ես վերևում, տարբեր տեղերում մանրամասն ասել եմ: Ահա այսպես թող իմ երկու դուստրերը տիրեն նրանց (իմա՝ վանքին նվիրաբերվածին — Հ. Բ.), ինչպես նաև իմ Սալիմ, Բիզինա, Եսայաս և Պարաբոնի [կալվածքներին], եթե նրանք ապրեն սիրո և խաղաղության մեջ: Նրանք թող միասին կատարեն տոները, հոգեհանգիստները, իրենց վրա վերցնեն վանքի և միաբանների ամբողջ հոգսը, ինչպես նաև իմ բազմաչարչար հոգու: Կատարել հետևյալ սուրբ տոները: Աստվածածնի էպիլոխիան[70], ննջումը, կենարար խաչի վերացումը և [աստվածածնի] մուտքը տաճար: Հոգեհանգիստներ կատարել իմ ծնողների համար նոյեմբերի հինգին, իմ ողորմած կողակցի համար՝ սեպտեմբերի քսանվեցին, և այնուհետև ինչքան որ կարողություն տա աստված: Ճշգրտությամբ պահել երեք սուրբ պահքերը, այն է մեծ պահքը, սուրբ առաքյալներինը և ծննդյանը, ինչպես նաև չորեքշաբթի և ուրբաթ օրերինը, բացի զատկի ու տասներկու օրվանը[71], ըստ յոթ [տիեզերական] ժողովների ավանդության: Որպեսզի նշված հոգեհանգիստները անխափան կատարվեն, ինչպես նաև որպեսզի սուրբ վանքի ծառայողները առանց գայթակղության և անխափան կատարեն իրենց պարտականությունները, այդ բոլորի համար ես տվեցի իմ ազատ կալվածքի եկամուտը: Եթե այդ (վերևում նշված) բոլոր իմ (ցանկությունները), իմ զավակներն ու ժառանգները սիրով և ճիշտ կատարեն, ապա թող նրանք լինեն իմ ամբողջ սեփականության տերն ու տիրականը: Սակայն եթե այդ գործը իմ ժառանգները լքեն կամ ալանան, թող նրանք տիրեն իմ տան, Սալիմի, Եսայասի և Պարաբունիոնի վրա, իսկ Բուզինա կալվածքը թող մնա միաբանների և երկու վանքերի ծախսերը հոգալու համար, ինչպես վերևում ասվեց:

Իմ ընդոծիններին[72], այն է իմ ստրուկների մասին ես անցյալում հոգացի և բոլորին ազատ արձակեցի և նրանց շնորհեցի լեգատներ (այդ ստրուկներից ոմանք արդեն մահացել են, ոմանք էլ դեռ կենդանի են), որպեսզի նրանք ազատ, բոլորովին ազատ և օրենքների համաձայն հռոմեական քաղաքացիներ լինեն, ըստ իրենց կոդիկելլոսների[73]: Թող նրանք ազատ, բոլորովին ազատ առհավետ տիրեն իրենց [իմ կողմից] տրված ցեգոտապիոններին: Նախ և առաջ Կիրիակոսը, որն ինձ հետ է մեծացել և իմ բոլոր ճանապարհորդությունների ընթացքում շատ չարչարվել: Ես նրան տվեցի ազատ կին՝ վանական և երեց

Գլիմենոսի հարազատ քրոջը, կատարելով ամուսնական բոլոր ծիսակատարությունները։ Իմ ծանր հիվանդության ժամանակ ես նրան որպես լեգատ թողել էի տասնհինգ [դահեկան] և ապրանքով ինչ որ նա ուներ հացուտեղեն և տնային իր։ Ինդիկտիոնի վեցերորդ տարին[74] ես նրան թողեցի ես տաս [դահեկան], իսկ այժմ, իմ կյանքի վերջում, երբ նրա Կոնստանդին որդուն Աստվածածնի [վանքի] միաբան դարձրի, թողնում եմ ես տասը [դահեկան]։ Նույնպես իմ աղախին Սեմնիին, ես նրան երկու անգամ լեգատ շնորհեցի, իսկ նրա որդուն՝ Վասիլիոսին կին տվեցի, պատվեցի միաբանի պաշտոնով և թողնում եմ նրան մեկ ազատ զևգոտոպիոն և տաս [դահեկան]։ Հարազատ քույրեր Սոֆիային և Մարիցային, նրանց ամուսիններին ու երեխաներին ես ազատ, բոլորովին ազատ արձակեցի, շնորհելով նրանց լեգատներ անցյալում երկու անգամ, իսկ այժմ թողնում եմ Արսագոսին մեկ զևգոտոպիոն, Լասկարիսին մեկ բոյգոտոպիոն[75], նույնպես և Նիկիտասին, որին անցյալում միայն մեկ անգամ լեգատ էի շնորհել, այժմ թողնում եմ մեկ բոյգոտոպիոն և երեք [դահեկան]։ Իսկ որովհետև Արսագոսի որդուն Գեորգիոսին և Լասկարիսի որդուն Միքայելին Աստվածածնի [վանքի] միաբաններ դարձրեցի, դրա համար թողնում եմ որպես լեգատ Գեորգիոսին հինգ, իսկ Միքայելին երեք [դահեկան]։ Մարկիանոսը օրինական կարգով ամուսնանալուց հետո, թող նա էլ ազատ լինի և ստանա որպես լեգատ ինչ որ պատահի։ Ստեփրիկոսին ազատ արձակելով և լեգատ շնորհելով արձանագրեցի կոդիկելլոսում[76]։ Իսկ Գրիգորիոսին և նրա կնոջ Թեոդորային ազատում եմ իմ կողակցի՝ ողորմած Աննայի հոգու փրկության համար։ Նրան (իմա Գրիգորիոսին — Հ. Բ.) ես Աստվածածնի [վանքի] միաբան դարձրի և նա թող ստանա սարկավագին համեմատ ռոճիկը և կերակուրը և ինչ որ վաստակի իր գրչի արհեստից։ Իսկ որպես լեգատ ես նրան թողնում եմ երեք [դահեկան]։ Ազատ արձակած իմ ընդծիններից և արծաթագին[77] ստրուկներից ինչքան որ արու զավակներ ծնվեն, թող նրանք դաստիարակվեն Աստվածածնի վանքում, սովորեն սուրբ գիրքը, մտնեն միաբանների դասը, իրենց [ապրուստը] ստանալով վանքից, իսկ եթե լինեն կանայք կամ տղամարդիկ, որոնք կցանկանան ծառայել իմ ժառանգներին, թող նրանք ստանան իրենց ռոճիկն ու կերակուրը փոխադարձ համաձայնությամբ[78]։ [Իմ ժառանգները] ոչ մի իրավունք չունեն որևէ կերպ նրանց վաճառելու կամ նվիրելու։ Ես ցանկանում եմ, որ նրանք (իմա ծառաները — Հ. Բ.) լինեն բացարձակապես ազնվական և ազատ[79]։

Նախկինում ազատ արձակված Սիլիղնուին ես տվեցի իմ դուստր Մարիային, որպեսզի նա նրան ծառայի ընթացիկ ինդիկտիոնի տասներկուերորդ տարվանից մինչև [հաջորդ] ինդիկտիոնի առաջին տարին[80]։ Նրան (իմա Սիլիղնուին — Հ. Բ.) ես ամուսնացրեցի իմ ստրուկ Ապոֆարիոսի հետ։ Ես ցանկանում եմ, որ նա էլ ազատ լինի և ստանա որպես լեգատ [իր կնոջ հետ միասին] երեքական դահեկան։ Նույնպես իմ ստրուկ Մոուսեսին[81] և նրա հոր Ղաբիպին [ես ազատ արձակեցի] իմ սիրելի որդու Ռոմանոսի [հոգու] փրկության և նրա հիշատակի համար։

Չնայած, որ ես արդեն զզվել եմ իմ բարեպաշտ թեմայից, իմ հայրենիք Կապպադովկիայից, բայց չեմ ուզում [անուշադրության] մատնած լինել իմ մոր կողմից այնտեղ կառուցված երեք հիերարխների անվան եկեղեցին, դրա համար [այդ եկեղեցուն] հոգալու համար ես վերադիտող և տեր նշանա-

կեցի Մոդեստոսին։ Իմ հարազատ քրոջ հավատացյալ Իրենեի երեխաներին [ես թողեցի] երեսուն հյուպերպյուրոն[82], իսկ եկեղեցուն՝ եղած ամբողջ սրբազան գույքը, այն է արծաթե խաչեր, ոսկեզօծ սրբապատկերներ, հին գրքեր. դրանց վրա ավելացրած նաև քահանայի սքեմ։

Այսքանը սուրբ և սրբազան հաստատությունների մասին։ Իսկ վերևում հիշատակված լեգատները, ինչքանը որ ինձ կհաջողվի բաժանել աստծու օգնությամբ և աստվածածնի միջնորդությամբ, ես այդքանին էլ շնորհակալ եմ։ Բայց եթե ինձ հասնի մարդկանց համար ընդհանուր վախճանը, ապա [այդ սուրբ հաստատություններին] իմ կալվածների տարեկան պախտից[83] թող բաժին հանվի, հասկանալի է դուրս հանած թագավորական հարկերը։ Իսկ ավելացածը թող բաժանվի աղքատներին, որոնք իմ եղբայրներն են և տերերը։ Եթե պատահի, որ գտնվեն ինձ պատկանող անասուններ և այլ շարժական և դյուրաշարժ գույք, թող այն բաժանվի իմ ազգականների և բարեկամների միջև, որովհետև ես չեմ հիշում, որ իմ ամբողջ կյանքի ընթացքում կատարած լինեմ որևէ բարի գործ, այլ միայն զբաղվել եմ դատարկ բաներով, պորտաբուծությամբ և ինձ տվել եմ հաճույքների[84]։

Չգիտեմ ինչպես իմ ուշադրությունից վրիպեց իմ աղախին Զոեն, որին ես գնել էի չորս հարյուր դահեկանի դիմաց[85]։ Նրան ազատելու մասին պայմանագրի համաձայն, եթե նա դրժեր աստծու հետ կնքած պայմանը[86], պետք էր նորից ընկներ ստրկական լծի տակ։ [Նա ոչ միայն] դրժեց այդ պայմանը, այլ հակառակ իմ կամքին ամուսնացավ, բայց չնայած այդ բոլորին, ես ուզում եմ, որ նա ևս ազատ լինի, բացարձակապես ազատ, իր երեխաների հետ միասին։

Ամենատես աստծուն...[87]

...և հանձնվեմ գերեզմանին, այնտեղ ուր իմ կտակի համաձայն գտնվում է [իմ] հանգստարանը։ Ես աղաչում եմ ու պաղատում բոլորին, քահանաներին ու վանականներին, իմ ժառանգներին, որպեսզի նրանք իմ գերեզմանի վրա կատարեն երեքօրյան աղոթքը և տարեկան հոգեհանգիստներ իմ մեղքերի թողության համար։ Բայց ամենից շատ ու ամեն ինչի համար ես ամենակալ տեր աստծու առաջ և ամենասուրբ աստվածածնի և բոլոր երկնային ուժերի առաջ երդվեցնում եմ ոչ միայն իմ ժառանգներին, այլև բոլոր վերակացու մարմիններին՝ մետրոպոլիտներին, եպիսկոպոսներին, կատապաններին, դուքսերին, թեմական դատավորներին[88], թախանձում նրանց որպեսզի իմ կարգադրությունները կատարվեն լրիվ և բացարձակապես։

Եթե իմ ազգականներից կամ ժառանգներից, կամ ազատ արձակված [ստրուկներից] կամ ընդոծիններից[89] որևէ մեկը ճիշտ ուղուց շեղվի և ուղղափառ հավատքից անցնի օտար, այլադեն հավատքի կողմը, եթե այն իմ ժառանգներից լինի՝ թող զրկվի իրեն հասնող բաժնից, եթե ազատ արձակված [ստրուկներից՝ նորից] ընկնի ստրկական լծի տակ[90], իսկ եթե այն դրսի մարդկանցից է[91], թող նա իմ տիրույթներից դուրս վռնդվի։

Եթե իմ դուստրերից որևէ մեկը, կամ նրա ամուսինը, երկուսի ցանկությամբ ուզենա ուրիշ տեղ բնակվել, ապա այդ դեպքում թող նրանց (իմա Իրենեի ու նրա ամուսնու և Մարիայի ու նրա ամուսնու — Հ. Բ.) միջև բաժանվի եկեղեցական բոլոր սուրբ գույքը, [այն պայմանով, որ հեռացողը] կառուցի Աստվածածնի վանքի նմանը, կամ թեկուզ ավելի փոքր վանք, և յուրաքան-

*չյուրը բավականաչափ իրեն ընկած բաժնով և արժանաչափ ատոծու և աստվածածնի օրհնությանը և առավել ևս...*[92] *[... այնպիսին նզովյալ լինի երեք հարյուր տասնութ հայրապետների կողմից և Հուդայի]*[93] *բաժինը ստանա և բոլորի կողմից դատապարտվի որպես հայրասպան և եղբայրասպան։*

*Իմ այս բոլոր [ցանկությունների կատարման] համար, իմ այս թշվառ կտակի խնամակալներ եմ թողնում նախ և առաջ ամենակալ տիրոջը և նրան անսերմ ծնողին, այնուհետև պայծառափայլ մագիստրոս տեր Վասիլիոսին և նրա հարազատ եղբայր հռչակավոր վեստարխոս*[94] *Ցարեմաննեսին, նաև թեմի ամենաաստվածասեր եպիսկոպոսին։ [Իմ կտակի] հոգաբարձուներ և վերակացուներ [եմ թողնում] իմ երկու փեսաներին՝ սպաթարոկանդիդատ*[95] *տեր Գրիգորիոսին և մերարխոս*[96] *Միքայելին և իմ վանքի ավագագույն քահանային։ Որպես լեգատ [թող վճարվի] պայծառափայլ հարազատ եղբայրներին*[97] *երկու, գուցե երեք լիտր [ոսկի], ամենաաստվածասեր եպիսկոպոսին վեց [դահեկան] կամ [դրա փոխարեն] մեկ գիրք*[98]*, նույնքան էլ քահանային։ Իսկ եթե գտնվի իմ հագուստներից կամ տնային առարկաներից որևէ բան, թող այն բաժանվի պատահած սուրբ վանականներին։*

*Սույն կտակը իմ թելադրությամբ գրվեց ձեռամբ Թեոդուլոս վանականի Աստվածածնի [վանքի] երեցի, որը և այն կարգի բերեց և որի տակ ստորագրեցին և ներկա եղող վկաները*[99]*, ընթացիկ ինդիկտիոնի տասներկուերորդ տարին, ապրիլ ամսին, վեց հազար հինգ հարյուր վաթսունյոթ թվին*[100]*, որին վկա են հայրն ու որդին և սուրբ հոգին։*

*Ես պրոտոսպաթարիոս և հյուպատոս Եվստաթիոս Բոյիլաս իմ ձեռքով ստորագրեցի։*

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

[1] *«Սահմաններից հեռու»։ Հունարենում* ὑπερόριος, *որ միաժամանակ նշանակում է աքսորական։*

[2] *Խրիսոտրիկլինոս, հունարեն* χρυσοτρίκλινος, *այն է «Ոսկե սեղան»։ Տոնախմբությունների ամենանշանավոր դահլիճներից մեկը Կոստանդնուպոլսի մեծ պալատում, որը գտնվում էր սուրբ Սոֆիայի մոտ։ Այդ դահլիճում մեծ հանդիսավորությամբ տեղի էին ունենում պրեպոզիտոսի, պատրիկների և Բյուզանդական կայսրության մյուս մեծամեծների հռչակումը։ Խրիսոտրիկլինոսում տրվում էին պաշտոնական ճաշկերույթներ։ Այս վերջին մանրամասնությունը համընկնում է խրիսոտրիկլինոս բառի ստուգաբանության հետ։ Այդ դահլիճը հաճախ հիշատակվում է Կոստանդին Ծիրանածինի աշխատություններից մեկում* De Ceremoniis-*ի մեջ։ Հայ մատենագրության մեջ խրիսոտրիկլինոսը հիշատակված է Անանիա Շիրակացու կողմից «Մարկիանու տրիկլին» ձևով։ (Տե՛ս* Вопросы и решения вардапета Анания Ширакаци, армянского математика VII века, издал и перевел И. А. Орбели, Петроград, 1918, *հարց 3-րդ, էջ 18։ Տե՛ս նաև ծանոթությունը 69-րդ էջում)։*

[3] *Պրոտոսպաթարիոս, հունարեն* πρωτοσπαθάριος*։ Հայկական աղբյուրներում հիշատակվում է «պրոտոսպաթարն» ձևով (տե՛ս Սմբատայ Սպարապետի Պատմութիւն, Մոսկվա, 1856, էջ 36), «պատոսպաթար» (Մատթէոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898, էջ 27, 28), նաև «պրոտասպաթար» (Գրիգոր Մագիստրոսի թղթերը, Ալեքսանդրապոլ, 1910, էջ 104)։ Բյուզանդական տիտղոս, որն սկզբում տրվում էր կայսեր թիկնապահին, իսկ հետագայում դարձավ հասարակ տիտղոս։ Հիշատակվում է գլխավորապես Մակեդոնական հարստության ժամանակաշրջանում։ Վերջին պրոտոսպաթարիոսները հիշատակվում են Ալեքսիոս Ա. Կոմնենոսի (1081—1118 թթ.) ժամանակ։ Կոստանդին Ծիրանածին կայսեր պաշտոնական արարողությունների նվիրված աշխատության մեջ գտնվում է արտիկլին Փիլոթեոսի կողմից 900 թվա-*

կանքին կազմված պետական պաշտոնյաների դասակարգումը: Պատրիկներն ու պրոտոսպաթարները մտնում էին առաջին դասի մեջ: (Տե՛ս Constantini Porphyrogeniti De Ceremoniis aulae byzantinae, vol. I, Bonnae, 1829, p. 713; Համե՛մ. Ф. И. Успенский. Византийская табель о рангах, Известия Русского Археологического Института в Константинополе, т. III, София 1898; V. Beneševič, Die byzantinischen Ranglisten nach dem Kletorologion Philothei und nach den Jerusalemer Handschriften zusammengestellt und revidiert. Byzantinisch-Neugriechische Jahrbücher, Bd. 5, 1 und 2 (Doppel-) Heft, Athen, 1926).

4 Հյուպատոս, հունարեն ὕπατος, արտասանվում էր իպատոս, ինչպես որ հանդիպում է նաև հայերեն միմակին արձանագրություններում: Համե՛մ. Արևելքի մագիստրոս և կատապան Բագարատի 1060 թ. Անիի մայր տաճարի արևմտյան պատի վրա թողած արձանագրությունը. «Մխիթար իպատոսն Կրտին որդին» (տե՛ս В. Бенешевич, Три Анийские надписи, стр 22).

Հյուպատոսը տիտղոս է, որ տրվում էր այն մարդկանց, ովքեր մտնում էին Բյուզանդիայի սենատի կազմում: Նրանք, ըստ Ֆիլոթեոսի դասակարգման, գտնվում էին չորրորդ դասի մեջ:

5 Բոյիլասն այդ թուղթը գրում է, որովհետև այդ էր պահանջում կտակի մասին բյուզանդական օրենսդրությունը: «Բասիլիկի» օրենսդրական ժողովածուում պարզ կերպով ցույց է տրված, թե ինչ է կտակը և ով կարող է կտակել: Այնտեղ գրված է.

«Ա. Կտակը, դա ցանկության արդարացի արտահայտությունն է այն բանի, ինչ որ մեկը ուզում է որ կատարվի իր մահվանից հետո:

Բ. Կտակողը պարտավոր է ոչ միայն մարմնով, այլև մտքով առողջ լինել (Համե՛մ. Մխիթար Գոշի Դատաստանագիրք Հայոց, Վաղարշապատ, 1880, մասն Բ, հոդված ՂԹ, «Հաստատուն կտակ յառողջութեանն է»):

Գ. Կտակելը պետական օրենսդրության է պատկանում, դա մասնավոր գործ չէ:

Դ. Կտակողը պարտավոր է կտակելու իրավունք ունենալ և իր կտակը կատարել համաձայն օրենքների:

Ե. Կտակի բովանդակությունը չպետք է հակասի այդ գործին վերաբերող օրենքներին:

Զ. Տղամարդը իրավունք ունի կտակել, եթե լրացրել է տասնչորս տարին, իսկ կինը տասներկու տարին:

Է. Խուլն ու համրը իրավունք չունեն կտակելու, իսկ նախօրոք կատարված կտակումը չեղյալ է հայտարարվում:

Ը. Հիվանդը կարող է կտակել միայն թագավորի թույլտվությամբ» (Տե՛ս Basilicorum libri LX, ed. Heimbach, Lipsiae 1843, liber XXXV, titulus I.

6 Այն է 1053 թվականին:

7 Այն է 1056 թվականին:

8 Բնագրում գրված է. κατάλοιπον ταῖς δυσὶ θυγατράσι καὶ τὸν ἅπαντα βίον ἐμέ: Բենեշևիչը կարծում էր, որ κατάλοιπον-ը καταλείπω բայի հարակատար դերբայն է, տեքստում գրված երկու ուղղագրական սխալներով: Նրա կարծիքով պետք է լինի καταλιπών այսինքն «թողնելով»: Սակայն այս դեպքում Բենեշևիչը հանդիպեց մի այլ դժվարության: Չէ որ καταλιπών-ը արական սեռի դերբայ է, իսկ «թողնող» անձնավորությունը Եվստաթիոս Բոյիլասի կինն է: Բենեշևիչը առանց որևէ դժվարության այդ էլ «ուղղում» է և դարձնում καταλιποῦσα. այսինքն «թողնելով», բայց իգական սեռի: Ինչպես տեսնում ենք, այդպիսի «ուղղումներով» բավականին հեռանում ենք բնագրից: Մեր տեքստի κατάλοιπον բառը, որ հին հունարենի ոչ մի բառարանում չէր հանդիպի, միջին հունարենի, ինչպես նաև նոր հունարենի κατάλοιπος բառի հայցական հոլովն է, որ նշանակում է «մնացյալ մասը»: Չնայած Բոյիլասի կտակը վխտում է ուղղագրական սխալներով, այնտեղ չի կարելի գտնել շփոթումներ, սխալներ սեռերի մեջ, ինչպես որ այս դեպքում էլ Բոյիլասի կտակում սխալ թույլ չի տրված: Բոյիլասը պարզ կերպով ասում է, որ իր կնոջ մահը իրեն անչափ վիշտ պատճառեց:

9 Այն է 1059 թվականին:

10 Հայագիտության համար մեծ հետաքրքրություն ներկայացնող այս պարբերության մեջ Բենեշևիչը բաց է թողել սխալ. ὡς μήτε τοῖς ἀντικρὺς ἐνοικήσαντα Ἀρμενίοις παρὰ μικρὸν ἐᾶν ἠρεμεῖν. τὸ δὲ εἰ συνεχομένους ὡς ἀνεπίβατον τοῖς πολλοῖς εἶναι καὶ ἄγνωστον πελέκει καὶ πυρὶ κατατεφρώσας. Մեր կողմից ընդգծված բառերը, որոնք իրականում պատկանում են նախորդ նախադասության, Բենեշևիչը տեղափոխել է հաջորդ նախադասություն, միաժամանակ թույլ տալով մի փոքր սխալ ևս, որը, սակայն, խեղաթյուրել է միտքը: Պետք է լինի ոչ թե τὸ δὲ εἰ (τὸ — չեզոք սեռի հոդ, ուղղական կամ հայցական հոլով, δὲ — շաղկապ, որ նշանակում է իսկ, սակայն, εἰ — նույնպես շաղկապ, եթե, թե, թեպետ և այլ իմաստով), այլ τῷ

ὀξεῖ, որ նշանակում է «վախից, սարսափից»։ Հաջորդ բառն էլ «հափշտակված» արդարացնում է մեր ուղղումը «վախից հափշտակված» այսինքն սարսափահար։ Այդպիսով, այս երկու բառը կապվելով նախորդ նախադասության հետ ստացվում է. «Իմ այս պանդխտության սկզբում, երբ ես այստեղ ժամանեցի և բնակվեցի, այս վայրը, որ ես ստացա, գարշահոտ էր, անտառների, գա-ձերի, կարիճների և վայրի գազանների բույն էր, ինչ որ բոլորովին հանգիստ չէր տալիս գի-ծացն ապրող հայերին, որոնք սարսափահար էին եղել։ Իսկ այնուհետև ինչպես բնագրում։

[11] Բնագրում ἄγνωστον, որ բառացի նշանակում է անծանոթ։

[12] Համեմատի՛ր Սաղմոս ԿԳ (ԿԴ). 6—8։

[13] Ձեռագրում պարզ կարդացվում է καὶ ὅσα։ Բենեշևիչը շփոթել է καὶ-ի նշանը ζ տառի հետ, որոնք իրար շատ նման են, և կարդացել ζῶσα, անիմաստ բառ, որը և համարելով երբեմն սխալ ուղղում է ζῶα-ի «անասուններ»։ Իրականում պետք է կարդալ καὶ ὅσα «և ինչ որ կամ «և ինչքան որ»։

[14] Հունարենում Βουζινά, նույն կտակում մի այլ տեղում գրված է Βυζινά, Բիզինա։

[15] Կալվածք։ Հունարենում κτῆμα, ինչպես նաև κτῆσις։ Դրա ինչ լինելու մասին մենք բացատրություն ենք գտնում այսպես կոչված «Հարկային կանոնադրության» մեջ, մի հույական հուշարձան, որը կազմվել է Կոստանդին Ծիրանածին կայսեր ժամանակ։ Այնտեղ ասված է. κτῆσις ու χωρίον-ը (գյուղը) ամեն ինչում համընկնում են, բայց վաղուց տարբերվում են նրանով, որ գյուղի բնակիչների բնակարանները մի վայրում են և կողք կողքի կառուցված, իսկ κτῆσις-ի բնակարանները շատ են և նրա բնակիչների բնակարանները ցրված են և մեկը մյուսից շատ հեռու են գտնվում, այսինքն յուրաքանչյուրի տունը գտնվում է այնտեղ, ուր որ գտնվում է նրա հողակտորը» (Տե՛ս W. Ashburner, A byzantine treatise of taxation. The Journal of Hellenic Studies, vol. XXXV (1915), p. 77.

[16] Տեքստում Ἰσαίου։ Մեզ թվում է թե այստեղ մենք գործ ունենք ոչ թե Իսաու, այլ ավելի մեծ հավանականությամբ՝ Եսայիա մարգարեի անվան հետ։ Միջին դարերում և Ἰσαίου և Ἡσαΐου արտասանվել է նույն ձևով Իսայիու։ Այն անվանված է χωρίον — գյուղ։ Հաճախ գյուղերը ամրացված էին լինում պարիսպներով և աշտարակներով։ Այսպես, օրինակ, Գրիգոր Բակուրյանը իր գյուղերից (χωρίον) մեկի՝ Ստենիմախոսի մասին գրելիս, նշում է, որ նրա մեջ նա կառուցել է երկու բերդ παρ' ἐμοῦ κτισθεῖσιν ἐν αὐτῷ δυσὶ κάστροις. Հաճախ գյուղ ասելով հասկանում էին բերդ։ Նույն Բակուրյանը գրում է Ֆիլիպպուպոլսի իր Պետրիծոս գյուղի մասին հետևյալը. «Ֆիլիպպուպոլսի թեմում գտնվող բերդը, այն է գյուղը, որ կոչվում է Պետրիծոս...» (κάστρον, ἤτοι χωρίον τὸ ἐπονομαζόμενον Πετριτζός)։ Տե՛ս L. Petit, Typicon de Grégoire Pacourianos pour la monastère de Petritzos (Bačkovo) en Bulgarie, Византийский Временник Приложение к XI тому. № 1. С.-Петербург. 1904. стр. 10. Նույն բանն ենք հանդիպում նաև Արիստակես Լաստիվերտցու մոտ խոսելով Մորրաձոր կոչված գյուղի մասին, նա նշում է. «Քանզի բերդ ունէր գեօղն» (տե՛ս Արիստակես Լաստիվերտցի, Պատմութիւն, էջ 140)։

[17] Բնագրում Χουσπακράτη, մի ուրիշ տեղում, նույն կտակում այն հանդես է գալիս Χωσπακράτη ձևով։

[18] Ըստ երևույթին դա ընդունված ձև էր, որով ուզում էին ցույց տալ, թե ինչ որ գոյություն ունի, իրենց արդար «հալալ» աշխատանքի արդյունքն է։ Նույն բանին մենք հանդիպում ենք Միքայել Ատտալիատեսի կտակում, որը գրված է 1077 թվականին, թե պետությունից իր ստացած կալվածքները ամայի ու անպետք տարածություններ էին, և որ այդ բոլորը ինքն է ձեռք բերել (ἐξωνηθέντα μοι ἀπὸ τοῦ δημοσίου ἐρειπίῳ τόπῳ ἐπέκτισα). (Տե՛ս Miklosich et Müller, Acta et diplomata graeca medii aevi sacra et profana, t. V., Vindobonnae, 1887, p. 304.

[19] Պարզելու համար թե պրոաստիոնը (προάστειον) իրենից ինչ էր ներկայացնում և միաժամանակ պատկերացում կազմելու համար կտակին ժամանակակից հայկական սկզբնաղբյուրներում հանդիպող պրաստ, պրաստին և պրաստից բառերի բովանդակության մասին, մենք այստեղ դիմում ենք բյուզանդական տարբեր հուշարձանների օգնությանը։ Հայագիտության մեջ վերոհիշյալ բառերի բացատրությունը տրվում է դասական հունարենի հիման վրա, որը հասկանալի է, իր բովանդակությամբ շատ հեռու է միջին դարերի նույն բառի բովանդակությունից։ Ստ. Մալխասյանցը իր «Բացատրական բառարանում» պրաստ, պրաստին և պրաստից բառերը, որոնք միանգամայն ճիշտ բխեցնում է հունարեն προάστειον-ից, բացատրում է «քաղաքի արվարձան»։ Դա ճիշտ է, իհարկե, դասական շրջանի հիշատակությունների համար, իսկ միջին դարերի պրոաստիոնը բոլորովին այլ բան է նշանակում։ «Հարկային կանոնադրության» մեջ գրը-

ված է, որ պրոաստիոնը տարբերվում է այլ կալվածներից նրանով, որ նրանց տերերը այնտեղ չեն ապրում, այլ միայն նրանց ենթակա մարդիկ, այն է ստրուկներ, վարձակալներ և ուրիշներ (Տե՛ս W. Ashburner, A byzantine treatise of taxation, Journal of Hellenic Studies vol. XXXV, (1915), p. 77. Հմմտ. Fr. Dölger, Beiträge zur Geschichte der byzantinischen Finanzverwaltung besonders des 10 und 11 Jahrhunderts Byzantinisches Archiv, Heft 9, Berlin, 1927, S. 115. Մեծ արժեք ներկայացնող այս հուշարձանը թարգմանված է ռուսերեն Ե. Է. Լիպշիցի կողմից, տես Сборник документов по социально-экономической истории Византии. Москва, 1951, стр. 147—154, և գերմաներեն Գ. Ա. Օստրոգորսկու կողմից, տես Die ländliche Steuergemeinde des byzantinischen Reiches im X Jahrhundert, Vierteljahresschrift fur Social- und Wirtschaftsgeschichte, 20 (1927). Այս բացատրությանը հակասում է Բոյիլասի կտակը: Նրա Տանձուտ-Սալիմ կալվածքը, ուր ինքն էր ապրում, կտակում կոչվում է պրոաստիոն:

Պրոաստիոնի չափերի մասին պատկերացում են տալիս Եվստաթիոս Բոյիլասին ժամանակակից այլ կտակներ և վանքերի կանոնադրությունները: 1073 թվականին գրված մի պրակտիկի համաձայն Միլետոսի մոտ գտնվող Դալայիդա կոչվող պրոաստիոնը ուներ երկու հարյուր իննսունչորս սոկարիոն երկարություն և հարյուր հիսունութ սոկարիոն լայնություն, այսինքն 46.452 քառակուսի սոկարիոն տարածություն: Մեկ սոկարիոնը (պարանը) հավասար էր 20 ամբողջ 436 հազարերորդական մետրի (տե՛ս Fr. Hultsch, Griechische und römische Metrologie, zweite Bearbeitung, Berlin, 1882, S. 617): Նշված պրակտիկը ավելի կոնկրետ ցույց է տալիս, որ այդ պրոաստիոնը ուներ 5609 մոդ հողային տարածություն: Հուլչի հաշվումներով մեկ մոդ հողատարածությունը հավասար էր 839 ամբողջ 42 հարյուրերորդական քառակուսի մետրի (տե՛ս նույն տեղում, էջ 617), Ֆ. Ուսպենսկու հաշվումներով մեկ մոդը հավասար էր 200 քառակուսի սաժենի (տե՛ս Ф. И. Успенский, Акт отвода земли монастырю Богородицы Милостивой, Известия Русского Археологического института в Константинополе, том I, Одесса, 1896, стр. 18). Պ. Բեզոբրազովի հաշվումներով մեկ մոդ հողատարածությունը 1/12 դեսյատինից մի քիչ պակաս է (Տե՛ս П. В. Безобразов, Патмосская писцовая книга, Византийский Временник, том VII, 1900, стр. 106). Հասկանալի է, որ այդ 5609 մոդ հողատարածությունը միայն մշակելի տարածություն չէր, այլ դրա մեջ էին մտնում նաև արոտատեղիները, լեռնային հողերը և այլն:

Պրոաստիոնի մասին ավելի հստակ հասկացողություն են տալիս Լերոս կղզում գտնվող Լիպսո վանքի երկու պրոաստիոնները: Այդ մասին վկայում է մի փաստաթուղթ, որը գրված է 1089 թվականին (տե՛ս Miklosich et Müller, Acta et diplomata graeca medii aevi sacra et profana, vol. VI, Vindobonnae, 1870, pp. 36—88):

Կանգ առնենք Տեմենիա կոչված պրոաստիոնի վրա: Նա ուներ 259 մոդ մշակելի հողատարածություն, չհաշված լեռնային հողերն ու արոտատեղիները: Տեմենիայի արոտավայրերի չափը չի նշանակված, բայց նույն վանքին պատկանող մյուս պրոաստիոնը Պարթենիոնը ուներ արոտատեղի և մշակելի տարածություն միասին վերցրած 6050 մոդ: Ամբողջ Լերոս կղզին ուներ մշակելի տարածություն առաջին, երկրորդ և երրորդ որակի չորս հարյուր մոդ, մնացածը լեռնային, քարքարոտ, անտառով ծածկված հողերն էին և արոտատեղիները: Այսպիսով, եթե ամբողջ Լերոսն ուներ 400 մոդ մշակելի տարածություն, որից 259 մոդը պատկանում էր Տեմենիա պրոաստիոնին, ապա մնացած 141 մոդ մշակելի տարածությունը մտնում էր Պարթենիոնի 6050 մոդ ընդհանուր հողատարածության մեջ: Այդ բոլորը, ինարկե, չի լուծում այն հարցը, թե քանի մոդ անմշակելի հողատարածություն ուներ Տեմենիա պրոաստիոնը:

Տեմենիա պրոաստիոնում կար սուրբ Անարգիրոսների անվան եկեղեցի, 9 տուն, որոնք ծառայում էին որպես պահեստներ, գոմեր, ախոռներ, ստրուկների և ճորտերի բնակարաններ, ջրհոր, այգի, ուր կային չորս նշենի, տաս նռնենի, 11 սերկևիլի ծառ, 156 ձիթենի, 326 կաղնի և այլն, ինչպես նաև ձիթհանք:

Ինչպես տեսնում ենք պրոաստիոնը հաճախ բավականին մեծ չափեր էր ընդգրկում և իրենից ներկայացնում էր ամբողջական կալվածք: Պրոաստիոնների մասին տե՛ս նաև Г. А. Острогорский, Византийский податной устав, „Сборник статей, посвященных памяти Н. П Кондакова", Прага, 1926, стр. 121.

20 Մեկ լիտր ոսկին հավասար էր 72 ոսկեդրամի: 25 լիտր ոսկին հավասար էր 1800 ոսկեդրամի (νόμισμα) կամ դահեկանի:

21 Բնագրում πάχτον (կարդա՛ πάκτον), նշանակում է հարկ, եկամուտ, ռենտա: Հայկական սկզբնաղբյուրներում պակտ բառը հանդիպում է միայն մեկ անգամ 1055—1056 թվա-

կանների միջև գրված Ահարոն մագիստրոսի արձանագրության մեջ, որը փորագրված է Անիի մայր տաճարի արևմտյան պատի վրա: Այդ արձանագրության մեջ հիշատակված հարկերի մասին մանրամասն տես մեր հոդվածը՝ «Ահարոն մագիստրոսի արձանագրության (1055—1056 թթ.) մեջ հիշատակված հարկերի մասին» (Պատմա-բանասիրական հանդես, № 4, 1959 թ.):

[22] Դահեկան, հունարեն նոմիզմա (νόμισμα), կոչվում էր նաև հյուպերպյուրոն (կարդացվում էր «իպերպիրոն») ὑπέρπυρον: Դա ոսկեդրամ էր: «Հարկային կանոնագրության» համաձայն յուրաքանչյուր տաս մոդ մշակելի հողի համար վճարվում էր մեկ նոմիզմա ոսկով (տե՛ս W. Ashburner, A byzantine treatise of taxation, Journal of Hellenic Studies, vol. XXXV (1915), p. 77: Նույն բանն է ասված նաև Պատմոսյան մի փաստաթղթում, որը ժամանակակից է Բոյիլասի կտակին (տե՛ս Miklosich et Müller, Acta et diplomata graeca medii aevi sacra et profana, vol. VI, p. 7, 15): Հետևաբար, ընդհանուր հաշվումներով, որպեսզի Տանձուտը կարողանար 80 դահեկան ոսկով տալ, պետք է որ մոտավորապես 800 մոդ մշակելի հողատարածություն ունենար, չհաշված արոտատեղիները ու լեռնային կամ անտառային հողատարածությունները, ինչպես նաև դուրս հանած այն չորս զևգոտոպիոնները, որոնք հենց Տանձուտ գյուղից Բոյիլասը նվիրել էր իր ազատ արձակած ստրուկներին, որի մասին տես ստորև:

[23] Էննոմիոնը (հունարեն ἐννόμιον), արոտավայրերի օգտագործման համար գանձվող հարկն էր:

[24] Բյուզանդիայում «Զևգարատ» էին կոչվում այն գյուղացիները, որոնք ունեին մեկ զույգ եզ (ζευγάριον) և դրան համապատասխանող նորմալ հողաբաժին, որը կոչվում էր զևգոտոպիոն (հունարեն ζευγοτόπιον), իսկ «բոյիդատ» այն գյուղացիները, որոնք ունեին մեկ եզ (βοΐδιον) և զևգարի կես հողաբաժինը, այն է մեկ բոյդոտոպի (βοϊδοτόπιον): Փ. Ուսպենսկու հաշվումներով 12-րդ դարում զևգարատն ունենում էր 80 մոդից մի քիչ ավել հողաբաժին: 80 մոդ հողը համարվում էր բավարար այն գյուղացու համար, որն ուներ գյուղատնտեսական գործիքներ և մեկ զույգ եզներ (տե՛ս Ф. И. Успенский Акт отвода земли монастырю Богородицы Милостивой. Известия Руссхого Археологического института в Константинополе. том I, Одесса, 1896, стр. 11).

Բոյիլասի կտակին ժամանակակից մի փաստաթղթի համաձայն, զևգարատները վճարում էին հողային և ծխային հարկ մեկ դահեկանի չափով: Եղել են դեպքեր, երբ վճարվում էր երկու և կեսից մինչև չորս դահեկան հարկ: Բոյդատները վճարում էին միայն ծխահարկ կես դահեկանի չափով (տե՛ս Г. А. Острогорский. Византийские писцовые книги, Byzantinoslavica, t. IX, fasc. 2 (1948), p. 244, 246):

Զևգոտոպիոն հասկացողությանը, ամենայն հավանականությամբ, համապատասխանում է հայկական վիմագիր արձանագրություններում հանդիպող «լուծ հող» դարձվածքին: Այսպես, օրինակ, 1241 թվականին Ներգսերի Դիզակ գավառի Գտչաց վանքում գրված մի արձանագրության մեջ ասված է, որ վանքին է նվիրաբերվել ի մէջն այլոց «Ա լուծ հող ի Տայիս, Ա լուծ ի Դաղ» և այլն (տե՛ս Կ. Կոստանյանց, Վիմական տարեգիր, Ս. Պետերբուրգ, 1913, էջ 84: Համեմատիր նաև Հասան Ջալալի 1240 թ. արձանագրությունը Գանձասարում (նույն տեղում, էջ 81):

[25] Լեգատ, հունարեն λεγάτον: «Պրոխիրոս նոմոս» կոչված դատաստանագրքում կա լեգատ բառի սահմանումը: Դա այն ընծան էր, պարգևը, նվերը, որ հանգուցյալը թողնում էր որևէ մեկին: Այդ նույն դատաստանագրքի համաձայն, որևէ մեկը կարող էր լեգատ թողնել ոչ միայն ռեալ գոյություն ունեցող իրը և այլն, այլև այն, ինչ դեռ ռեալ գոյություն չունի, բայց հուսով է, որ կլինի, օրինակ որևէ ագարակի բերքը, կամ էլ որևէ աղախնի աշխարհ բերելիք երեխան: Պրոխիրոս նոմոսի համաձայն լեգատարիոսը, այն է լեգատի ստացող տերը, լեգատին է տիրում, երբ դեռևս այն չի ստացել: Լեգատը նա կարող է ստանալ նույնիսկ երեսուն, բայց ոչ ավել, տարի անց: Լեգատը շնորհողի կենդանության ժամանակ լեգատարիոսը իրավունք չունի պահանջելու իր լեգատը (տե՛ս Zachariae a Lingenthal, Jus graeco romanum, pars VI, Prochiron auctum, Lipsiae, 1870, titulus XXXV, §§ 1, 2, 14, 15, 39).

[26] Ստրուկներ: Բոյիլասի կտակում ստրուկ բառը արտահայտված է մի քանի տերմիններով, δοῦλος, ψυχάριον, θεραπαινίς, οἰκετικὰ πρόσωπα, οἰκογενῆ πρόσωπα: Ստրուկների իրավական դրության մասին այդ ժամանակաշրջանում առավել կամ պակաս պատկերացում կազմելու համար ստորև մեջ ենք բերում բյուզանդական «Բասիլիկի» օրենսգրքի մի քանի հոդվածներ «Պրոխիրոս նոմոսի» շարադրությամբ:

«Ազատության և ստրկության մասին».

Ա. Անձնավորությունների ծայրահեղ բաժանումն այն է, որ մարդկանց մի մասն ազատ է,

իսկ մյուսը ստրուկ։ Իսկ ազատությունը, որից և մարդկանց մի մասը ստացել է ազատների կոչումը, հետևյալ կերպ պետք է սահմանել։

Բ. Ազատությունը բնական դյուրություն է, որ յուրաքանչյուրին թույլ է տալիս անել ցանկացածը, բացառած այն, ինչ օրենքը կամ բռնությունն արգելում է։ Բռնության տակ պետք է հասկանալ այն, ինչ օրենքը չի արգելում, սակայն թույլ չի տալիս [անել ցանկացածը] մի ուրիշը, ով [բռնողից] ավելի ուժեղ է։ Իսկ օրենքի տակ պետք է հասկանալ այն, ինչ պատժի սպառնալիքի տակ արգելում է ինձ անել այն, ինչ ես կամենում եմ։ Որովհետև վախը ինձ արգելում է անել ինչ մտադրել եմ կատարել ուժով։

Գ. Ստրկությունը դա հեթանոսական օրենքից մեզ հասած ժառանգություն է, որի համաձայն որևէ մեկը ենթարկվում է մի ուրիշի իշխանությանը, հակառակ բնության օրենքների, քանզի բոլոր մարդիկ ի բնե ազատ են ստեղծվել, բայց պատերազմների հնարումը առաջացրեց ստրկությունը։ Պատերազմի օրենքն ուզում է, որ պարտվածները դառնան հաղթողի սեփականությունը։

Դ. Ստրուկները կամ ծնվում են կամ ձեռք են բերվում։ Ծնվում են մեր աղախիններից, իսկ ձեռք են բերվում համաձայն հեթանոսական օրենքների, այն է գերեվարությունից։ Ստրկությունը չի ընդունում որևէ բաժանում։ Որովհետև չի կարելի ասել նրանց մասին, թե [մեկը մյուսից] առավել կամ պակաս ստրուկ է։ Ստրկությունը անբաժան է։ Իսկ ազատների դեպքում մենք գտնում ենք բազմաթիվ տարբերակումներ։ Նրանք լինում են կամ ազնվական և կամ էլ ազատ արձակված։

Ե. Ազատները երկուսի են բաժանվում, ազնվականների և ազատ արձակվածների։ Ազնվականը նա է, ով սկզբից, ծնվելու օրից ազատ է, ով երբեք չի ճաշակել ստրկության լուծը, ով ծնվել է երկու ազնվականներից կամ երկու ազատ արձակվածներից, կամ նրա ծնողներից մեկը ազնվական է, իսկ մյուսը ազատ արձակված։

Զ. Եթե որևէ մեկը ծնվի ազատ մորից և ստրուկ հորից, նա ազնվական է, նույնպես եթե ծնվի ազատ մորից և անորոշ հորից, այսինքն, պոռնկական ճանապարհով։ Որովհետև ոչինչ չի վնասում երեխայի ազնվականությանը այն, որ հղիացումը կատարվել է պոռնկական ճանապարհով։ Բավական է միայն, որ ծննդաբերության ժամանակ մայրը ազատ լինի, նշանակություն չունի, որ հղիացման ժամանակ նա կարող էր ստրուկ լինել։

Է. Եվ ընդհակառակը, եթե հղիանա իր ազատ եղած ժամանակամիջոցում և այնուհետև [իր գործած] որևէ հանցանքի համար օրենքի համաձայն ստրկանա և ապա երեխա բերի, այդ ծնվածն ազատ է, որովհետև սաղմը չպետք է տուժի մոր դժբախտության համար» (տե՛ս Basilicorum libri LX, ed. Heimbach, Lipsiae, 1846, liber XLVI, titulus I. Հմմտ. Zachariae a Lingenthal, Jus graeco-romanum, pars VI. Prochiron auctum, Lipsiae, 1870, titulus XXXIV):

Նույն դատաստանագրքի համաձայն, ստրուկը կարող էր գնել իր ազատությունը, այսինքն նա կարող էր փող, սեփականություն ունենալ։ «Եթե ստրուկը,— գրված է այնտեղ,— նույնիսկ փող է տվել իր տիրոջն ու ազատվել, այնուամենայնիվ նա պարտավոր է հարգել նրան» (տե՛ս Zachariae a Lingenthal, Jus graeco-romanum, Pars V, Synopsis Basilicorum, Lipsiae, 1869, p. 543):

«Բասիլիկի»-ի համաձայն ստրուկը կարող էր չվճարել լրիվ փրկագինը, պակասող մասի դիմաց աշխատելու պայմանով ստրկատիրոջ համար (տե՛ս Basilicorum liber XLVIII, titulus I, 4)։

«Բասիլիկի»-ից երևում է նաև, որ ազատ արձակված ստրուկները կարող էին իրենց սեփականությունը նույնիսկ կտակել։ Այնտեղ ասված է, որ ազատ արձակված ստրուկը, եթե ունենա հարյուր դահեկանից պակաս սեփականություն, կարող է այն կտակել իր ցանկության համաձայն։ Եթե նա վախճանվել է անժառանգ և առանց կտակ թողնելու, նրա ունեցվածքը ժառանգում է պատրոնը։ Հարյուր դահեկանից ավելի ունեցողներին ժառանգում են իրենց երեխաները, թոռները, ծոռները և այլն, իսկ այն դեպքում, երբ ժառանգ չունեն և կտակ չեն թողել, ժառանգում է պատրոնը։ Եթե ազատված ստրուկը երեխա չունենալով կտակ է թողնում, ապա այդ դեպքում նա պարտավոր է իր սեփականության երրորդ մասը թողնել պատրոնին» (տե՛ս Basilicorum liber XLIX, titulus I, 28)։

[27] Այն է 2160 ոսկեդրամ։

[28] Դյուրաշարժ գույք։ Բնագրում εὐκίνητα πράγματα:

[29] Հայ մատենագրական աղբյուրներում նույնպես ստրուկներն, այսինքն, ծառաներն ու աղախինները, սովորաբար հիշատակվում են սեփականության նյութեղեն իրերի հետ միասին

կանանց օժիտի մասին հիշատակելիս սովորաբար անասունների և անշարժ առարկաների հետ միասին իբրև սեփականության առարկա թվարկում են նաև աղախիններին (տե՛ս Ե. Սամուելյան, Հին հայ իրավունքի պատմություն, հատ. Ա., Երևան, 1939, էջ 308)։

[30] Տեքստում գրված է τὸν κανονιζόμενον καὶ βασιλικὸν κῆνσον: Բոյիլասի կտակի κανονιζόμενον-ը ըստ երևույթին κανονικόν կոչված հարկն էր, սահմանված Իսահակ Կոմնենոս կայսեր (1057—1059 թթ.) մի խրիսովուլով։ Կանոնիկոնը վճարում էին յուրաքանչյուր թեմի բնակիչները իրենց եպիսկոպոսին։ Այդ նույն օրենքը վերահաստատվեց նաև 1086 թվականին, Ալեքսիոս Կոմնենոս կայսեր կողմից։ Այդ խրիսովուլի բովանդակությունը հետևյալն է.

«Յուրաքանչյուր եպիսկոպոս իր շրջանի բնակիչներից ամեն տարի պետք է ստանա որպես կանոնիկոն. երեսուն ծուխ ունեցող շրջանից՝ մեկ ոսկեդրամ, երկու արծաթ դրամ, մեկ խոյ, վեց մոդ գարի, վեց չափ գինի, վեց մոդ ալյուր, երեսուն հավ։ Քսան ծուխ ունեցող (շրջանից)՝ ոսկեդրամի երկու երրորդը, երկու արծաթի փոխարեն՝ մեկ (Ալեքսիոս Կոմնենոսի խրիսովուլում մեկ և կես—Հ. Բ.), չորս մոդ գարի, չորս չափ գինի, չորս մոդ ալյուր և քսան հավ։ Տաս ծուխ ունեցող գյուղից՝ հինգ արծաթ դրամ, մեկ ոչխար, երկու մոդ գարի, երկու չափ գինի, երկու մոդ ալյուր և տաս հավ» (Տե՛ս Zachariae a Lingenthal, Jus graeco-romanum, Pars III, Novellae constitutiones. Imp. Isaacii Comneni aurea bulla de sportulis pro ordinatione praestandis et de canonico, Lipsiae, 1857, p. 323. Նույն տեղում, էջ 365—366, տե՛ս նաև Ալեքսիոս Կոմնենոսի խրիսովուլը, որն հաստատում է Իսահակ Կոմնենոսը)։

[31] «Վանքի ջահընկալության համար» բնագրում λόγῳ φωταψίας։ Հայկական աղբյուրներում կոչվում է նաև լուսարարություն, որի տակ հասկացվում է եկեղեցու բոլոր կարիքների մասին հոգալը։ Գրիգոր Բակուրյանի վանքի կանոնադրության մեջ ցույց է տրված վանքի «ջահընկալի» պարտականությունները. հոգալ ճրագի, ձեթի, մոմերի մասին, հաղորդության գինու և ալյուրի մասին և այլն (տե՛ս L. Petit, հիշյալ աշխատությունը, էջ 22)։

[32] Հունարենում Παραδούνι։ Նույն կտակում այն անվանված է նաև Παραδόνι։

[33] Մոդ, հունարենում μόδιος։ Դա երկու նշանակություն ունի։ Մեկը սորուն մարմինների ծանրության չափ է և հավասար է 9 կիլոգրամ 792 գրամի (տե՛ս Հ. Մանանդյան, Կշիռները և չափերը հնագույն հայ աղբյուրներում, էջ 133), իսկ մյուսը տարածության չափ է։ (Մոդի մասին որպես տարածության չափի տե՛ս 19-րդ ծանոթագրությունը)։

[34] Մեկ լիտրը հավասար էր 408 գրամի (տե՛ս Հ. Մանանդյան, Նյութեր Հին Հայաստանի տնտեսական կյանքի պատմության, ՀՍՍՀ Պետական համալսարանի գիտական Տեղեկագիր, 1928 թ., № 4, էջ 59)։

[35] Ձեռագրում կարդացվում է καὶ ὤσπρεα καὶ ὠπόρας (կարդա՝ καὶ ὄσπρια καὶ ὀπώρας)։ Բենեշևիչը կարդացել է καὶ ὤσπερ ἐαξόπορας, որը ոչ մի իմաստ չունի։

[36] Կիսավածանկար, բնագրում χυμευτάς (էմալ)։ Միջնադարյան կիսավածանկարի (էմալի) տեխնիկայի մասին տե՛ս J. Labarte, Histoire des arts industriells au moyen âge et à l'époque de la Renaissance, t. III, Paris, 1875, p. 74 sq.;

[37] ἀστερίσκος, թարգմանաբար նշանակում է փոքր աստղ։ Այն պատրաստվում էր մետաղից և հաղորդության հացի ամանի՝ մաղզմայի մասն էր կազմում։

[38] Անարգը միաբանների վերարկուն էր (տե՛ս Նոր բառգիրք Հայկազյան լեզվի, անարգ բառը)։

[39] Ձեռագրում σπονδηνήτζην, որը ծագում է σπονδή բառից։ Մենք ենթադրաբար թարգմանել ենք «զոհամատուցման բաժակ»։

[40] Ձեռագրում այն կոչված է սկարամանգին— σκαραμάγγιον։ Այդ կտորից կարվում էր կայսեր, բարձրաստիճան պաշտոնյաների, հատկապես զինվորականների հանդերձանքը, որը նույնպես կոչվում էր սկարամանգիոն և ուներ արևելյան ծագում։ Այդ մասին տե՛ս N. P. Kondakov, Les costumes orientaux à la Cour byzantine, Byzantion, t. I, 1924, p. 10 sq.:

[41] Հոլոգրաֆիական, հունարեն ὁλο·ραφικαί։ Տեխնիկական տերմին է նկարչության մեջ, երբ գույների հիմքում ընկած է մոմը—մոմանկար։

[42] Բնագրում գրված է ἐξ ἐπίπλεκτα ἀργυροχρύσωτα, Բենեշևիչը ἐξ-ը ընդունել է որպես նախդիր։ Ճիշտ չէ, որովհետև այդ նախդիրը միշտ պահանջում է սեռական հոլով, իսկ տեքստում հաջորդող բառերը ուղղական հոլովում են։ Պետք է լինի ἕξ—վեց։

[43] Բնագրում բառը լրիվ չի գրված μικροκου... Բենեշևիչը լրացնում է μικροκου[μδια]։ Գրիգոր Բակուրյանի Բաչկովոյի վանքի կանոնադրության մեջ հիշատակված է, ի միջի այլոց, բուրվառատարան արծաթե փոքր զամբյուղ. μετὰ ἀργυρῶν μικρῶν καρφίων (տե՛ս L. Petit,

Typicon, p. 53)։ Մեզ թվում է, որ ավելի ճիշտ կլինի Բոյիլասի կտակի տերմը վերականգնել ոչ թե μικροκού[μβια], այլ μικρο[κάρφια] ձևով, ոչ թե փոքր կոճակներ, այլ փոքր գամեր։ Նույն բանին ենք հանդիպում Պատմոսի վանքի գրադարանում գտնվող ավետարանների կազմերի վրա, որոնք ունեն մեծ քանակությամբ ոչ թե կոճակներ, այլ գամեր (տե՛ս Ch. Diehl, Le trésor et la bibliothèque de Patmos au commencement du 13-e siècle, Byzantinische Zeit schrift, Bd. I, 1892, S. 514)։

44 Սա Հովհաննես Մոսխոսի գործն է։ Հովհաննես Մոսխոսն ապրել է 6-րդ դարի վերջերին Պաղեստինում։ Նրա գիրքը՝ Լիմոնարիոնը (Մարգագետինը) բովանդակում է Արևելքի սրբերի, վանականների և ճգնավորների վարքաբանությունները։ Լիմոնարիոնը հրատարակվել է Մինյի կողմից (տե՛ս Beati Joannis Eucratae liber qui inscribitur Pratum quod floridam proferat vitarum narrationem coelestis roseti. Migne, Patrologia graeca, t. 87)։

45 Մեկ բառ եղծված է ձեռագրում։

46 Պանդեկտես, հունարեն Πανδέκτης, այն է սուրբ գրոց համաբարբառ։ Հրատարակվել է Մինյի կողմից (տե՛ս Migne, Patrologia graeca, t. 89)։

47 Շարականոց է, որը համառոտակի բովանդակում է տոների և զանազան սրբերի պատմական գովաբանությունը։ Լավագույն կոնդակարները վերագրվում են Ռոմանոս Մելոդոսին (Ս դար)։

48 Այդ անունով սուրբ մեզ հայտնի չէ։

49 Հովհաննես Դամասկացու (Ը դար) աշխատություններից մեկը, գուցե նրա ամենանշանավոր աշխատությունը՝ Expositio accurata Fidei orthodoxae։ (Հրատարակվել է Մինյի կողմից։ Տե՛ս Patrologia graeca, t. 94, col. 789—1228)։

50 Գրիգոր Աստվածաբանի երգերը, տե՛ս Gregorii Theologi archiepiscopi Constantinopolitani Carmina, Migne, Patrologia graeca, t. 37, col. 397—1600, t. 38, col. 11—336:

51 Մելիսա (այն է Մեղու), որը գրվել է 11-րդ դարի հեղինակ Անտոնիոս վանականի կողմից։ Տե՛ս Antonii Monachi cognomento Melissae sententiae sive loci communes ex sacris et profanis auctoribus collecti, Migne, Patr. gr., t. 136, col. 765—1244):

52 Եպիփան Կիպրացու (Դ դար) աղանդների դեմ գրած հայտնի աշխատությունը։ Տե՛ս Epiphanii Constantiae quae in Cypro est episcopi adversus octoginta haereses opus quod inscribitur Panarium sive Arcula, Migne, Patr. gr., t. 41, col. 173—1200, t. 42, col. 9—773:

53 Ենթադրվում է բյուզանդական հայսմավուրքների խոշորագույն հեղինակ Սիմեոն Մետաֆրաստեսի (Ժ դար) աշխատությունը։ Տե՛ս Symeonis Logothetae cognomento Metaphrastae Opera omnia, Migne, Patr. gr., t. 114—116:

54 Բեզոբրազովի կարծիքով «Պարականոնների» տակ ենթադրվում է Գեորգ Պիսիդեսի աշխատությունը Հերակլ կայսեր պարսիկների դեմ կատարած արշավանքի մասին։ Ըստ Ս. Վրիոնիսի «Պարականոնները» այնքան լայն հասկացողություն է, որ հնարավոր է նրա տակ հասկանալ նաև այլ գործեր, օրինակ, Ագաթիասի (Զ դար) գործը։ Վերջինս գրել է Հուստինիանոս կայսեր պատմությունը 552—559 թթ., որպես Պրոկոպիոս Կեսարացու Պատմության շարունակություն։

55 Բեզոբրազովի կարծիքով՝ Միքայել հրեշտակապետի վարքաբանությունը։

56 Տե՛ս Basilii Caesareae Cappadociae archiepiscopi libri quibus impii Eunomii apologeticus evertitur, Migne, Patrologia graeca t. 29, col. 497—773:

57 Լրիվ հրատարակվել են Մանսիի կողմից։ Տե՛ս Mansi, Sacrorum conciliorum nova et amplissima collectio, t. VI et VII, Paris—Leipzig, 1901:

58 Ենթադրվում է Անաստասիոս Սինայացու (Է դար) ամենից հայտնի գործը Ὁδηγός-ը։ Տե՛ս Anastasii Sinaitae episcopi Antiocheni Viae Dux adversus Acephalos, Migne, Patr. gr., t. 89:

59 Բեզոբրազովը ենթադրում է, որ դա Ալեքսանդր Մեծի մասին միջնադարյան վեպն է։ Ս. Վրիոնիսի կարծիքով հոգևոր գիրք է։

60 Աքիլլես Տացիոսի (Գ դար) գրած սիրային վեպը «Լևկիպպեի և Կլիտոփոնի մասին»։

61 Պարականոն աշխատություն, պահպանված նաև հին հայերեն թարգմանությամբ։ Տե՛ս «Անկանոն գիրք հին կտակարանաց», Վենետիկ, 1896, էջ 27—151։

62 Եզովպոսի առակները։ Նորագույն հրատարակությունը լույս է տեսել երկու հատորով 1957 թվականին։ Տե՛ս Corpus fabularum aesopicarum, ed. A. Hausrath, Lipsiae, 1957:

63 Գեորգիոս Պիսիդեսը, բյուզանդական պոետ, ծնվել է Զ դարի վերջում։ Նրանից մեզ հասել են բազմաթիվ գործեր։ Հայտնի չէ, թե Բոյիլասն նրա գործերից որ մեկն ուներ։ Պիսիդեսի

գործերի լիակատար հրատարակությունը տե՛ս Մինյի մոտ. Georgii Pisidae magnae ecclesiae diaconi et sceuophylacis, Migne, Patr. gr., t. 92:

[64] Հավանաբար Ժ դարի վանական Միքայել Մալեինոսի վարքը, որը գրի է առել նրա աշակերտ Թեոֆանեսը:

[65] Ըստ Ս. Վրիոնիսի Դ դարում ապրած Նիֆոն սրբի վարքը:

[66] Հավանաբար Փիլոն Եբրայեցու աշխատությունների ժողովածու:

[67] Հովհաննես Կլիմաքսի (Է դար) աշխատությունը, որը միջնադարում թարգմանվել է նաև հայերեն: Հունարեն տեքստը տե՛ս Joannis Climaci Scala Paradisi, Migne, Patr. gr., t. 88, col. 632—1164:

[68] Պարզ չէ թե ինչ է դրա տակ ենթադրվում:

[69] Իսիդոր Պելուսիոտես (370—450 թթ.) գրել է ընդամենը 2013 նամակ, որոնք պատմական մեծ արժեք են ներկայացնում: Հրատարակված են Մինյի կողմից: Տե՛ս Isidori Pelusiotae epistolarum libri quinque de interpretatione divinae scriptorae, Migne, Patrologia graeca, t. 78, col. 177—1645:

[70] Էպիֆանիան, դա Քրիստոսի ծննդյան հաջորդ օրվան (դեկտեմբերի 26-ին) նվիրված տոնն է:

[71] Այսինքն՝ ծննդից (դեկտեմբերի 25-ից) մինչև հայտնությունը (հունվարի 6-ը) ընկած ժամանակամիջոցը:

[72] Մենք այդ բառը թարգմանում ենք բառացի: Տեքստում գրված է οἰκογενῆ, այն է տան մեջ ծնված: Բոյիլասը նկատի ունի ոչ թե գնած ստրուկներին, այլ իր աղախինների աշխարհ բերած երեխաներին, որոնք օրենքի համաձայն կրում էին ստրկական լուծը, եթե այդ աղախինների ամուսինները ազատ քաղաքացիներ չէին: Այդ մասին տե՛ս նաև 89-րդ ծանոթությունը:

[73] «Բասիլիկի» Դատաստանագրքի համաձայն կոդիկիլլոս (κωδίκελλος) է կոչվում այն ավելադիր կտակային գրությունը, որը կազմվում է կտակ թողնողի կողմից կտակն ավարտելուց հետո և նպատակ ունի արձանագրելու այնտեղ այն, ինչ կտակողը մոռացել է արձանագրելու հիմնական կտակի մեջ (տե՛ս Basilicorum liber XXXV, tit. I, 1): Ըստ երևույթին Բոյիլասը կտակից բացի կազմել է նաև առանձին կոդիկիլլոսներ, ուր արձանագրված էին ստրուկներին վերաբերող իր ցանկությունները: Նույն «Բասիլիկի» դատաստանագրքում գրված է նաև, որ կտակը (διαθήκη) կարող է կոչվել ուրիշ բառով ևս, օրինակ կոդիկիլլոս (նույն տեղում, XXXV, tit. I, 14): Այնպես որ կտակ և կոդիկիլլոս բառերը կարող են հոմանիշ լինել:

[74] Այն է՝ 1053 թվականին:

[75] Տե՛ս 24-րդ ծանոթությունը:

[76] Տե՛ս 73-րդ ծանոթությունը:

[77] «Արծաթագին» ենք թարգմանում բնագրի ὠνητῶν բառը:

[78] Բոյիլասն այստեղ գուցե նկատի ունի, որ ծառայության դեպքում ոչ միայն ազատ արձակված ստրուկները պետք է համաձայն լինեն դրան, այլև իր ժառանգները, կամ էլ, որ ավելի հավանական է, այստեղ խոսքը վերաբերում է վարձի քանակի հարցում երկու կողմերի համաձայնության գալուն:

[79] Բնագրում գրված է՝ ἀλλ' εὐγενεῖς μὲν εἶναι καὶ ἐλευθέρους κατὰ παντός τρόπου βούλομαι: Այստեղ խոսքը ազատների երկու կատեգորիաների մասին է, որի վերաբերյալ մենք 26-րդ ծանոթության մեջ (§ 5) ներկայացրել ենք բյուզանդական մի օրենսգրքի մանրամասն բացատրությունը:

[80] Այն է՝ 1059 թվականից մինչև 1063 թվականը:

[81] Հունարեն տեքստում այս անունը բերված է հայերեն արտասանությամբ, Մուսես(իս) Μουσέσης և ոչ հունարեն՝ Մոիսիս կամ Մոսիս Μωσῆς, Μωϋσῆς:

[82] Տեքստում չորս բառ եղծված է: Վերջին երկու բառերից մնացել են հետևյալ տառերը τρια..... ὑπε....., որոնք մենք վերականգնում ենք τριά[κοντα] (=30) ὑπέ[ρπυρα]: Հյուպերպյուրոնը ոսկեդրամ է (նույնն է նոմիզման): Տեքստի այսպիսի վերականգնումը չի հակասում տվյալ կոնտեքստին, ուր խոսքը վերաբերում է Բոյիլասի կողմից իր որոշ երեխաներին և եկեղեցուն թողնված գույքի մասին:

[83] Տե՛ս ծանոթություն 21-րդ:

[84] Սա, ըստ երևույթին, ինքնանվաստացման ընդունված բանաձև է:

[85] Բոյիլասի կտակում միայն այս դեպքում արձանագրված է ստրկի արժեքը: Բոյիլասը իր աղախին Զոեին գնել է չորս հարյուր դահեկանով: Բյուզանդագետ Բեզոբրազովը (տե՛ս նրա հոդ-

վածք Завещание Воилы, Византийский Временник, т. XVIII, вып. 1—4, отдел III, стр. 114—115), հրատարակիչներն այս ավյալը համարում է անհավանական։ Մեզ հասած բյուզանդական օրենսգրքերը, որոնք ուժի մեջ էին նշված ժամանակաշրջանում, որոշակի նշում են ստրուկների արժեքը։ «Բասիլիկի» օրենսգրքում գրված է. «Ստրկի արժեքը թող լինի հետևյալը. լինի նա տղամարդ, թե կին, եթե ոչ մի արհեստի չի տիրապետում, քսան դահեկան, այն դեպքում, եթե նա տասը տարեկանից բարձր է, իսկ եթե պակաս՝ տասը դահեկան։ Եթե նա նոտար է կամ բժիշկ, ապա նոտարը մինչև հիսուն դահեկան, իսկ բժիշկը մինչև վաթսուն։ Եթե ստրուկները ներքինի են և տասը տարեկանից բարձր, բայց չեն տիրապետում որևէ արհեստի, հիսուն դահեկան, իսկ եթե տիրապետում են որևէ արհեստի յոթանասուն դահեկան, բայց եթե տասը տարեկանից փոքր լինեն, երեսուն դահեկան»։ (Տե՛ս Basilicorum liber XLVIII tit. XIV, § 4) համեմատի՛ր C. E. Zachariae a Lingenthal, Jus greaco-romanum, pars V, Synopsis Basilicorum, Lipsiae, 1869 p. 264, նույն բանը կրկնված է նաև Պեյրա օրենսգրքում, որը Բոյիլասի կտակին ժամանակակից է, տե՛ս Zachariae a Lingenthal. Jus graeco-romanum, Pars I, Peira, i. e. Practica Eustathii Romani, Lipsiae 1856, tit. XXVIII, § 21, ինչպես և ավելի ուշ կազմված Պրոխիրոս Նոմոս կոչված ժողովածուում. տե՛ս Zachariae a Lingenthal, Jus graeco-romanum, Pars VI, Prochiron auctum, Lipsiae, 1870. titulus XXXIV, § 16, p. 298)։ Աղախին Ջոնն, որն իր տիրոջ կամքին հակառակ ամուսնացել էր, պարզ է, որ տասը տարեկանից բարձր պետք է եղած լիներ (վերոհիշյալ բոլոր օրենսգրքերի համաձայն ամուսնանալու տարիք էր սահմանված աղջիկների համար տասներկուսը, իսկ տղաների համար տասնչորսը), և եթե Ջոնն տիրապետում էր որևէ արհեստի, ապա նա պետք է դասվեր ստրուկների այն կատեգորիայի մեջ, որը գնահատվում էր մինչև երեսուն դահեկան։ Եթե նկատի ունենանք այն փաստը, որ Բոյիլասի նստավայր Տանձատ գյուղի տարեկան ամբողջ եկամուտը կազմում էր ընդամենը ութսուն դահեկան, ապա պարզ կլինի, որ Ջոնի արժեքի մեջ սխալ է թույլ տրվել գրչի կողմից (հավանաբար շփոթվել է τεσσαράκοντα — քառասուն բառը τετρακόσια — չորս հարյուր բառի հետ), հակառակ դեպքում դուրս է գալիս, որ մեկ աղախնի արժեքը Բոյիլասի բոլոր գյուղերից ստացած տարեկան եկամտից շատ ավելի բարձր էր։ Այդ չի կարելի բացատրել նաև դրամի արժեքազրկմամբ, որովհետև բյուզանդական դրամի կուրսը 800 տարվա ընթացքում հաստատուն է մնացել (այս մասին տե՛ս H. Gelzer, Byzantinische Kulturgeschichte, Tübingen, 1909 S. 78)։

86 Ըստ երևույթին, Ջոնի ազատ արձակելու նախապայմանը նրա վանք մտնելն է եղել։

87 Ձեռագրում չորս տող եղծված է։

88 θεματικῶν δικαστῶν — բյուզանդական վարչական շրջանի՝ թեմայի դատավոր։ Սրանք ըստ երևույթին, համապատասխանում են այն դատավորներին, որոնք հիշատակված են Արիստակես Լաստիվերտցու Պատմության մեջ և նշանակվում էին բյուզանդական կառավարության կողմից նվաճված հայկական շրջաններում։ Հայ պատմիչի ասելով, Վասիլ Բ բյուզանդական կայսրը Հայաստանում «տիրէ բազում գաւառաց եւ բերդից եւ քաղաքաց։ Եւ կացուցանէ ի վերայ նոցա գործակալս եւ դատաւորս եւ վերակացուս» (տե՛ս Արիստակեսի Լաստիվերտցւոյ Պատմութիւն, էջ 5)։

89 Մենք ընդոծին ենք թարգմանում նույն այդ οἰκογενῆ բառը, որին հանդիպեցինք վերևում (տե՛ս ծանոթ. № 72)։

90 Օրենքը լայն հնարավորություններ էր տալիս ստրկատիրոջը կամ պատրոնին, ինչպես նա կոչվում է օրենսգրքերում (πάτρων), ազատ արձակված ստրուկներին նորից ստրկացնելու ամենափոքր հանցանքի դեպքում։ Ազատ արձակվածը, ըստ երևույթին, շատ քիչ էր տարբերվում ստրկական լուծը կրող ստրուկից։ Բերենք մի քանի հոդված «Բասիլիկի» օրենսգրքից, որոնք շատ պարզ վկայում են այդ մասին։ «Ազատ արձակված ստրուկները պետք է մեծ ակնածանքով և հարգանքով վերաբերվեն պատրոնին։ Եթե ազատ արձակված ստրուկը վատաբանի կամ վնաս հասցնի (պատրոնին), ապա նա թող նորից ստրկացվի» (Basilicorum liber XLVIII tit. XXVI, գլ. 1)։

«Ազատ արձակված ստրուկները, եթե չհպատակվեն իրենց պատրոններին և կամ վերջիններիս որդիներին, ապա պետք է նրանց մտրակահարել և բաց թողնել, սպառնալով ավելի ծանր պատիժ, եթե կրկնեն։ Եթե հայհոյել են, պետք է նրանց ժամանակավորապես աքսորել։ Եթե նրանք ձեռք են բարձրացրել (պատրոնի) վրա, նրանց դատապարտել հանքերում աշխատելու։ Նրանք ենթակա են նույն պատժին, եթե դավադրություն են սարքել (պատրոնի) դեմ կամ մեղադրել նրան» (Basilicorum liber XLIX, tit. I, գլ. 1)։

«Եթե ազատ արձակված ստրուկը ապերախտ գտնվի իր պատրոնի նկատմամբ և հայհոյի

նրան և կամ էլ նրան չարի վերաբերմունք ցույց տա և վերջապես արդարացի կերպով գրգռի նրա զայրույթը, ապա նա թող նորից ստրուկ դառնա, և նրա երեխաները, որոնք դրանից հետո են ծնվել, թող նրանք էլ ստրուկ դառնան» (Basilicorum liber XLIX, tit. II, գլ. 19)։

Բոյիլասի կտակից երևում է, որ ստրկատերը կարող էր ազատ արձակված ստրկին նորից ստրկացնել նույնիսկ առանց որևէ պատճառի։ Բոյիլասն իր Սիլիգնու կոչված աղախնին, որին իր իսկ ասելով նախապես ազատ էր արձակել, տալիս է իր դստեր Մարիային հինգ տարի ևս (1059 թվականից մինչև 1063-ը) նրան ծառայելու համար։ Ազատ արձակված ստրուկների մասին տե՛ս նաև վերևում, 25-րդ ծանոթության 5-րդ կետը։

91 Դրսի մարդիկ ասելով Բոյիլասը, հավանաբար, նկատի ունի իրենից արենդով հող վերցնող վարձակալներին, որոնք անձնապես կախված չէին իրենից, սակայն ապրում էին իր հողերի վրա։ Պրոաստիոններում ապրում էին բացի ստրուկներից, ճորտերից, նաև մարդիկ, որոնք կոչվում են μίσθιοι καὶ λοιποί. վարձականներ և այլք։ Վարձականները, ըստ երևույթին, սոցիալական իրենց վիճակով համապատասխանում էին Մխիթար Գոշի Դատաստանագրքում հիշվող «վարձավոր մշակ»-ներին կամ «վարձկան»-ներին (տե՛ս Մխիթարայ Գոշի, Դատաստանագիրք, Վաղարշապատ, 1880, մաս Բ, հոդվածներ ՃԻԱ, ՃԻԵ)։

92 Բնագրում յոթ տող եղծված է։

93 «... Այնպիսին նզովյալ լինի երեք հարյուր տասնութ հայրապետների կողմից և Հուդայի» նախադասությունը մենք վերականգնում ենք ելնելով իմաստից։ Ինչպես պարզ երևում է, այստեղ գտնվում էր անեծքի բանաձև, որը մեզ քաջ ծանոթ է վիմագիր արձանագրություններից։ Բազմաթիվ օրինակներից բերենք միայն մեկը, Գրիգոր Մագիստրոսի 1051 թվականի Կեչառիսում գտնվող արձանագրության վերջին մասը. «Արդ որ ոք այսմ վճռի հաստատոս խափանել ջանա թէ յառաջնորդաց ոք իցէ, կամ յիշխանաց, կամ ի քահանայից, այնպիսին Յ և ԺԸ հայրապետացն նզովեալ եղիցի եւ բաժինն ընդ Յուդայի եղիցի եւ ընդ տէրասպան քահանայիցն» (տե՛ս Կ. Կոստանյանց, Վիմական տարեգիր, էջ 23)։ Անկասկած, եղծված հատվածում բնագրում պետք է որ թվարկված լինեին, գուցե և անուններով, անձնավորություններ, ամենայն հավանականությամբ Բոյիլասի դուստրերը և փեսաները։

94 Ռազմական աստիճան Բյուզանդիայում։ Ֆիլոթեոսի ցուցակում վեստարխոսները գտնվում էին չորրորդ դասում։

95 Ռազմական աստիճան Բյուզանդիայում։ Հանդիպում է նաև հայկական սկզբնաղբյուրներում։ Արևելքի մագիստրոս և կատապան Բագարատի 1060 թ. Անիի մայր տաճարի պատին փորագրված արձանագրության մեջ, ի միջի այլոց, գրված է. «Գրիգոր Լապաստակա որդին սպաթարկանդիդատոն և Սարգիս Արտաւազա որդին սպաթարկանդիդատոն» տե՛ս В. Н. Бенешевич. Три Анийские надписи XI века Петербург, 1921, стр. 22)։ Սպաթարոկանդիդատները Ֆիլոթեոսի ցուցակում գտնվում էին երկրորդ դասում։

96 Ռազմական աստիճան Բյուզանդիայում։

97 Խոսքը վերաբերում է վերոհիշյալ մագիստրոս Վասիլիոսին և նրա եղբայր վեստարխոս Յարեսմանեսին։

98 Այս դարձվածքը հնարավորություն է տալիս պարզելու մոտավորապես, թե ինչ արժեր գիրքը 11-րդ դարի կեսերին Բյուզանդիայում։ Ճիշտ է, մենք որոշակի չգիտենք թե ինչպիսի գրքի մասին է խոսքը, բայց և այնպես այն ուշագրավ է, որ արժեցել է վեց դահեկան։

99 Բոյիլասի կտակում մենք չենք գտնում իր նշած վկաների ստորագրությունները, որովհետև ձեռագրի վերջին էջի ներքևի մասը պակասում է։ Կա միայն Բոյիլասի ստորագրությունը։ Բյուզանդական օրենսգրքի համաձայն, վկաները առնվազն հինգ հոգի պետք է լինեին։ Կտակի վկաների մասին «Բասիլիկա»-ում ասված է. «1. Ժառանգը իրավունք չունի կտակի վկա լինել, իսկ լեգատարիոսը (սրա մասին տես վերև, ծանոթ. 25-րդ) և (կտակի) խնամակալը՝ կարող են։ 2. Ենթակա մարդիկ իրավունք չունեն վկա լինելու։ Կինը չի կարող կտակի վկա լինել, այլ միմիայն դատարանում և այն էլ այն դեպքում, եթե չի դատապարտված շնության մեջ։ 3. Վկան կարող է կնքել նաև կտակողի կամ մի ուրիշի կնիքով էլ։ Երբ վկան կնքել է, բայց չի ստորագրել և կամ էլ ստորագրել է, բայց չի կնքել, նա համարվում է որպես գոյություն չունեցող։ Եվ նույնպես, այն վկան, որ չի գրել իր անունը, համարվում է որպես չկնքած։ 4. Կտակը գրող գրիչը կարող է այդ կտակի վկա լինել։ 5. Յուրաքանչյուր վկա պետք է իր ձեռքով գրի, թե ով է ինքը և ում կտակի տակ է ստորագրում» (տե՛ս Basilicorum liber XXXV, titulus I, §§ 21, 23, 28, 31)։

100 Այն է՝ 1059 թ.։

Р. БАРТИКЯН

# ЗАВЕЩАНИЕ ЕВСТАФИЯ ВОИЛЫ (1059 Г.) КАК ВАЖНЫЙ ИСТОЧНИК ПО ИСТОРИИ АРМЕНИИ И ГРУЗИИ

## Резюме

Статья посвящена изучению завещания византийского феодала Евстафия Воилы, основавшегося в середине XI века в армяно-грузинской области Кларджия. В статье говорится о значении завещания для изучения политики Византии во вновь захваченных ею областях Армении и Грузии. До сих пор было известно, что Византия, стремясь ослабить вышеупомянутые страны в политическом и военном отношениях, переселяла местных феодалов в Византию. Завещание Воилы показывает, что Византия не довольствовалась лишь этим. Византийские феодалы также, вероятно насильственно, переселялись на армянские и грузинские земли с целью их освоения. В статье указывается, что эта политика находила сильный отпор со стороны местного населения, главным образом со стороны «еретиков»—тондракцев, движение которых носило не только классовый, но и народно-освободительный характер и было направлено в особенности против византийских захватчиков.

В статье обстоятельно говорится о принадлежащих Воиле имениях и рабах, уточняется местонахождение некоторых селений. По мнению автора, эти селения находились недалеко от центра Кларджии — известного средневекового города Артануджа.

Кроме исследования о завещании, автор дает его полный перевод на армянский язык, снабженный комментариями.